ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

7

ՀՈՒԼԻՍ

ԵՐԵՎԱՆ ● 1967

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 ՀՈՒԼԻՍ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Лениниян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

## Содержание





# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ 50 ՏԱՐԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԹԵԶԻՍՆԵՐԸ

*Սովետական Միության աշխատավորները, եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդները, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժումը, ամբողջ առաջադեմ մարդկությունը 1967 թվականին հանդիսավորությամբ նշում են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակը:*

*Կես դար առաջ մեր հայրենիքը թևակոխեց հասարակական զարգացման սոցիալիստական ուղին: Հոկտեմբերյան հեղափոխությունը սկիզբ դրեց շահագործական հասարակարգից մարդկության ազատագրմանը, գիտական կոմունիզմի գաղափարների կենսագործմանը, խորագույն ազդեցություն գործեց համաշխարհային պատմության հետագա ողջ ընթացքի վրա: Նա բացեց աշխարհի համընդհանուր հեղափոխական նորացման դարաշրջանը՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանը:*

*Անցած տասնամյակներում Հոկտեմբերյան հեղափոխության գործը պատմական համակողմանի ստուգում է անցել, ցույց է տվել իր անհաղթահարելի ուժը, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների անանց նշանակությունը ինչպես մեր երկրի համար, այնպես էլ ամբողջ մոլորակի ժողովուրդների համար: Այդ գործը ապրում է ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի և կոմունիստական շինարարության նվաճումների մեջ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման, բանվորական շարժման հզոր թափի մեջ, ազգային-ազատագրական պայքարի հաջողությունների մեջ: Մարքսիզմ-լենինիզմը դարձել է հողագնդի հարյուր միլիոնավոր մարդկանց մտքերի տիրակալը, կոմունիստական շարժումը վերածվել է արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժի: Այս ամենը պատմական այն զարգացման արգասիքն է, որի սկիզբը հանդիսացավ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը:*

*Հեղափոխության իրագործման, պատմության կողմից մեր առջև դրված վիթխարի խնդիրների լուծման գործում բանվոր դասակարգը, ամբողջ սովետական ժողովուրդը ցուցաբերեցին անսահման նվիրվածություն կոմունիզմի գաղափարներին, արիություն և անձնվիրություն, բարձր գիտակցականություն և կազմակերպվածություն: Սովետական մարդիկ խոր հարգանք ու երախտագիտություն են հայտնում հեղափոխության հաղթանակի, սոցիալիզմի հաղթանակի համար պայքարած մարտիկներին: Մեր ժողովրդի համար միշտ սուրբ կլինի բոլշևիկ-լենինյանների, սոցիալիստական հեղափոխության, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների հերոսների հիշատակը, երբեք չեն մոռացվի առաջին հնգամյակների խիզախ կառուցողները, որոնք ստեղծեցին նոր գործարաններ, կոլտնտեսություններ, սովխոզներ, չեն մոռացվի բոլոր նրանք, ովքեր իրենց աշխատանքով կառուցեցին սոցիալիզմը, ամրապնդեցին աշխարհում առաջին սոցիալիստական պետության հզորությունը: Նրանց սխրագործությունը միշտ ծառայում է աշխարհի հեղափոխական վերափոխման մեծ գործին:*

*Հոկտեմբերյան հեղափոխության հիսնամյակի բարձունքից կուսակցությունը, սովետական ժողովուրդը իմաստավորում են անցած ուղին, որպեսզի*

ավելի լավ լուծեն նոր խնդիրները: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության սկսած հեղափոխական գործը ընդլայնվում, ամրապնդվում ու հաղթանակում է: Սոցիալիզմը հարյուր միլիոնավոր մարդկանց այսօրն է և համայն մարդկության վաղը:

# I. ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՈՒՂԻՆ: ՍՍՀՄ-ՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԼԻԱԿԱՏԱՐ, ՎԵՐՋՆԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ-ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ ՈՒՆԵՑՈՂ ԱՐԴՅՈՒՆՔ Է

1. 1917 թվականի նոյեմբերի 7-ին (հոկտեմբերի 25-ին) բոլշևիկյան կուսակցության գլխավորած բանվորների և գյուղացիների, զինվորների և նավաստիների զինված ապստամբության շնորհիվ, մեծ Լենինի ղեկավարությամբ, Ռուսաստանում հաղթանակեց սոցիալիստական հեղափոխությունը:

Աշխատավորները տապալեցին կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը, խորտակեցին շահագործական հասարակարգը: Իշխանությունը իր ձեռքը վերցրեց բանվոր դասակարգը՝ դաշնակցած աշխատավոր գյուղացիության հետ: Հեղափոխությունը հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա, ստեղծեց պետության նոր տիպ՝ սովետների սոցիալիստական հանրապետություն, դեմոկրատիայի նոր տիպ՝ դեմոկրատիա աշխատավորների համար: Դրանով իսկ ստեղծվեց էկոնոմիկայի և կուլտուրայի վերափոխման, բանվոր դասակարգի մեծ նպատակի՝ սոցիալիզմի և կոմունիզմի նվաճման առաջին և գլխավոր քաղաքական պայմանը:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելը օրինաչափ պրոցես է, հասարակության զարգացման անհրաժեշտ արդյունքը: XX դարի սկզբներին Ռուսաստանում ստեղծվեցին սոցիալիստական հաղթական հեղափոխության օբյեկտիվ պայմաններ, ինչպես նաև սուբյեկտիվ նախադրյալներ: Ռուսաստանը դարձավ համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը:

Թեև Ռուսաստանը գերազանցապես մնում էր ագրարային երկիր, այնտեղ արագ զարգանում էր կապիտալիզմը, արդյունաբերական արտադրությունը հասավ կենտրոնացման բարձր աստիճանի: Երկրում ձևավորվեց բանվոր դասակարգը, որի կորիզը կազմում էր արդյունաբերական պրոլետարիատը: Բանվորների կոպտագույն շահագործումը, գյուղացիների հողազրկությունն ու աղքատությունը, ժողովրդի քաղաքական իրավազրկությունը, ազգային փոքրամասնությունների ճնշված վիճակը, ֆեոդալական-ճորտատիրական և նահապետական մնացուկները, միջազգային կապիտալից եղած կախումը՝ այս ամենը Ռուսաստանը դարձնում էր սոցիալական և ազգային ճնշման կենտրոնը, իմպերիալիզմի ամբողջ սիստեմի հակասությունների հանգուցակետը և այդ սիստեմի ամենաթույլ օղակը:

1905—1907 թվականների հեղափոխությունը սասանեց ցարական ինքնակալության հիմքերը, հանդիսացավ բանվոր դասակարգի և գյուղացիության 1917 թվականի հեղափոխական ճակատամարտերի նախերգանքը:

Ռուսաստանում սոցիալ-տնտեսական և քաղաքական հակասությունները առանձնահատուկ սրություն ստացան համաշխարհային իմպերիալիստական պատերազմի պայմաններում, որը խարխլեց երկրի էկոնոմիկան և աներևակայելիորեն հյուծեց բանվորներին ու գյուղացիներին: 1917 թվականի փետրվարյան հեղափոխությունը վերացրեց ցարական ինքնակալությունը, սակայն իշխանության գլուխ անցած բուրժուազիան չէր ուզում և չէր կարող բավարարել բանվորների ու գյուղացիների կենսական կարիքները: Միայն պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումը կարող էր ապահովել հասարակական արմատական պրոբլեմների լուծումը: Կենսական շահերը, երկրի բախտի համար խոր անհանգստությունը աշխատավոր մասսաներին տիրաբար մղում էին դեպի հեղափոխական վերափոխումներ: Սոցիալիստական հեղափոխությունը դարձավ անմիջական գործնական խնդիր:



Հեղափոխության գլուխ էր կանգնած բանվոր դասակարգը: Դասակարգային դաժան մարտերում կոփված Ռուսաստանի պրոլետարիատը, բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ, աչքի էր ընկնում քաղաքական բարձր գիտակցությամբ, կազմակերպվածությամբ ու կայունությամբ շահագործման և ճնշման բոլոր ձևերի դեմ մղված պայքարում, ընդունակ եղավ իր ետևից տանելու աշխատավոր գյուղացիությանը: Նա իր մեջ մարմնավորեց ժողովրդի հեղափոխական հրաշալի ավանդները, հանդիսացավ աշխատավորների երջանկության համար մարտնչածների փառավոր պլեադայի գործի ժառանգորդն ու շարունակողը: Հենց սկզբից Ռուսաստանի պրոլետարիատը հանդես եկավ որպես ինտերնացիոնալիստ դասակարգ, բարձր պարզելով կապիտալի դեմ առաջին մարտնչողների մարտական կարմիր դրոշը, բանվորների միջազգային ընկերության՝ Առաջին ինտերնացիոնալի, Փարիզի կոմունայի հերոսների դրոշը:

Պրոլետարական հեղափոխության հաղթանակի ուղին ցույց տվեց գիտական սոցիալիզմի տեսությունը: Համաշխարհային պրոլետարիատի առաջնորդներ Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը տվեցին հասարակական զարգացման օրինաչափությունների խոր վերլուծությունը, բացահայտեցին կապիտալիզմի ամենասուր հակասությունները, ապացուցեցին սոցիալիստական հեղափոխության հետևանքով նրա կործանման անխուսափելիությունը: Նրանք ցույց տվեցին, որ հեղափոխական կուսակցության առաջնորդությամբ, աշխատավորների ոչ պրոլետարական մասսաների հետ սերտորեն դաշնակցած բանվոր դասակարգը բուն պատմության կողմից կոչված է տապալելու կապիտալիզմը և հաստատելու սոցիալիզմը:

Դասակարգային պայքարի ընթացքում, մարքսիզմ-լենինիզմի ամուր հիմքի վրա, Ռուսաստանում առաջ եկավ և հետզհետե ամրապնդվում էր նոր տիպի պրոլետարական կուսակցությունը՝ բոլշևիկների կուսակցությունը, որը առաջին անգամ գիտական սոցիալիզմը միացրեց մասսայական բանվորական շարժման հետ և համակողմանիորեն նախապատրաստված էր, որպեսզի պրոլետարիատին տաներ իշխանությունը նվաճելու: Նա իր մեջ ամբարեց հեղափոխականների սերունդների կողմից կուտակված այն ամենը, ինչը ամենաազնիվն էր ու մտածողը, խիզախն ու անձնվերը, կարողացավ ստեղծագործաբար իմաստավորել աշխատավորների հեղափոխական պայքարի պատմական փորձը: Բոլշևիկների կուսակցությունը Ռուսաստանի պրոլետարիատին տվեց դեմոկրատական և սոցիալիստական հեղափոխության գիտական ծրագիր, քաղաքականապես կազմակերպեց նրան և պայքարի հանեց ընդդեմ ինքնակալության ու կապիտալիստական հասարակարգի: Բոլշևիկների կուսակցության քաղաքականությունը համապատասխանում էր բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների արմատական շահերին, ուստի և արժանացավ ժողովրդի մեծամասնության աջակցությանը:

Պատմության մեջ մեծագույն հեղափոխությունը ղեկավարած կուսակցության գլուխ կանգնած էր հանճարեղ մտածող, աննկուն հեղափոխական Վլադիմիր Իլյիչ Լենինը: Նա հեղափոխության գաղափարական ոգեշնչողն ու կազմակերպիչն էր: Լենինը իր ամբողջ գիտակցական կյանքը նվիրեց բանվոր դասակարգի հեղափոխական պայքարին: Իմպերիալիզմի դարաշրջանի պատմական նոր պայմաններում նա ստեղծագործաբար զարգացրեց մարքսիզմի տեսությունը և այն նոր աստիճանի բարձրացրեց: Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը խոշորագույն ավանդ հանդիսացավ գիտական կոմունիզմի մեջ: Այդ տեսությունը գաղափարապես զինեց կուսակցությանը, բանվոր դասակարգին՝ բուրժուազիայի տիրապետության դեմ, քաղաքական իշխանության համար նրանց պայքարում: Հենվելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ուսմունքի վրա, Լենինը մշակեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման տեսական ու գործնական կարևորագույն պրոբլեմները: Լենինյան գաղափարները ոգեշնչում են հասարակության սոցիալական վերակառուցման մարտիկների նորանոր սերունդների: Լենինիզմը հեղափոխական մտքի և հեղափոխական գործողության հավերժ կենդանի աղբյուր է: Լենինի անունը դարձել է նոր աշխարհի խորհրդանիշը:

*կուսակցությունը, սովետական իշխանությունը համբերատար ու հետևողական կերպով կազմակերպում էին ժողովուրդների բազմակողմանի համագործակցությունը, որոնք 1922 թվականի դեկտեմբերին կամովին միավորվեցին Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ: ՍՍՀՄ-ի կազմվելը, որը վավերագրվեց 1924 թվականի սովետական սահմանադրությամբ, պատմական վիթխարի նշանակություն ունեցող իրադարձություն էր:*

*Հոկտեմբերյան հեղափոխությունը, սոցիալիզմի կառուցումը արթնացրին և պատմական ինքնուրույն ստեղծագործության բարձրացրին անցյալում հետամնաց ժողովուրդներին, իսկ նրանցից մի քանիսին փրկեցին ֆիզիկական մահացումից: Սոցիալիզմի կառուցման ընթացքում նրանք ձեռք բերեցին սեփական պետականություն, վերացրին իրենց տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, հաղորդակից դարձան տնտեսության ու կուլտուրայի սոցիալիստական բարձրագույն ձևերին: Այդ հաղթանակը առավել նշանակալի է նրանով, որ այն ժողովուրդները, որոնք հեղափոխությունից առաջ գտնվում էին ֆեոդալական և նույնիսկ նահապետական-տոհմատիրական հասարակարգի փուլում, անցան սոցիալիզմի, շրջանցելով կապիտալիզմը: Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր խոստովանությամբ, լենինյան ազգային քաղաքականության իրագործման ասպարեզում մեծ դեր է պատկանում ռուսական բանվոր դասակարգին, ռուս ժողովրդին:*

*Սոցիալիզմը ՍՍՀՄ-ի բոլոր ժողովուրդների համար ապահովում է փաստական հավասարություն քաղաքական, տնտեսական, կուլտուրական տեսակետներից: Տնտեսական զարգացման ավելի ցածր աստիճանի վրա գտնվող ժողովուրդներին ցույց տրվեց տնտեսական հսկայական օգնություն, հատկացվեցին կապիտալ մեծ ներդրումներ արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի արագ զարգացման համար: Ազգային հարցի լուծման գործում կարևոր ուղենիշներ հանդիսացան ուկրաինական, բելոռուսական ու մոլդավական ժողովուրդների վերամիավորումը, սովետական իշխանության վերականգնումը մերձբալթյան հանրապետություններում և նրանց մտնելը Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ:*

*Սովետական հանրապետությունների՝ ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինական ՍՍՀ-ի, Բելոռուսական ՍՍՀ-ի, Ուզբեկական ՍՍՀ-ի, Ղազախական ՍՍՀ-ի, Վրացական ՍՍՀ-ի, Ադրբեջանական ՍՍՀ-ի, Լիտվական ՍՍՀ-ի, Մոլդավական ՍՍՀ-ի, Կիրգիզական ՍՍՀ-ի, Տաջիկական ՍՍՀ-ի, Հայկական ՍՍՀ-ի, Թուրքմենական ՍՍՀ-ի, Էստոնական ՍՍՀ-ի ազատ ու իրավահավասար ժողովուրդները՝ Սոցիալիստական Հանրապետությունների Միության բոլոր ազգերն ու ազգությունները, ընդհանուր ջանքերով կառուցեցին սոցիալիզմ, դուրս եկան բարգավաճման ուղի և հսկայական հաջողությունների հասան էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման գործում:*

**ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման գլխավոր գործիքը պրոլետարիատի դիկտատուրայի պետությունն է:** *Պրոլետարիատի դիկտատուրայի բարձրագույն սկզբունքը բանվոր դասակարգի դաշինքն է գյուղացիության հետ՝ բանվոր դասակարգի ղեկավար դերի պայմաններում: Սովետական պետությունը այն մեծագույն ուժն էր, որն ընդունակ եղավ կազմակերպելու միլիոնավոր մարդկանց ստեղծագործ աշխատանքը, ապահովելու նոր էկոնոմիկայի ու կուլտուրայի ստեղծումը, ժողովրդի բարեկեցության վերելքը:*

*Մեր հասարակության պատմության անմոռաց էջերից է աշխատավորների մասսայական հերոսությունը ժողովրդական տնտեսության վերականգնման և առաջին հնգամյակների տարիներին: Սովետական մարդիկ ուժեր չէին խնայում, գիտակցորեն զրկանքների էին դիմում՝ արիության ու անձնվիրության օրինակներ ցույց տալով աշխատանքում՝ հանուն երկրի տնտեսական հետամնացությունը հաղթահարելու և այն սոցիալիստական հզոր տերություն դարձնելու: Մագնիտկայի, Կուզբասի, Թուրքսիբի, Դնեպրոգէսի, Ամուրի Կոմսոմոլսկի և ինդուստրիայի շատ այլ առաջնեկների կառուցումը, սոցիալիստական մրցության ու հարվածայնության լայն ծավալումը՝ այս ամենը աշխատանքի նկատմամբ նոր, սոցիալիստական վերաբերմունքի դրսևորումներ են:*

*Հեղափոխական վերափոխումների, ժողովրդի աշխատանքային ու քաղաքական խանդավառության շնորհիվ Սովետական Միությունում կառուցվեց աշխարհի առաջին սոցիալիստական հասարակարգը: Սոցիալիզմի հաղթանակը օրենսդրականորեն վավերագրվեց 1936 թվականի դեկտեմբերին Սովետների VIII արտակարգ համագումարի ընդունած ՍՍՀՄ սահմանադրությամբ: Սահմանադրությունը հաստատեց ՍՍՀՄ-ի հասարակական ու պետական կազմակերպության սոցիալիստական հիմքերը, քաղաքացիների սոցիալական լայն ազատություններն ու իրավունքները, մտցրեց իշխանության օրգանների ուղղակի հավասար և ընդհանուր ընտրությունների սիստեմ՝ գաղտնի քվեարկությամբ, ընդլայնեց բոլոր միութենական ու ինքնավար հանրապետությունների, ինքնավար մարզերի ու ազգային օկրուգների ներկայացուցչությունը իշխանության բարձրագույն օրգանում: Քաղաքական վերնաշենքը համապատասխանեցվեց սոցիալիզմի տնտեսական բազիսին:*

*Սովետական Միության զարգացումն ընթանում էր միջազգային բարդ իրադրության մեջ, իմպերիալիստական ագրեսիայի մշտական վտանգի պայմաններում: Այդ վտանգը առանձնապես ուժեղացավ, երբ Գերմանիայում իշխանությունը զավթեց ֆաշիզմը՝ իմպերիալիզմի առավել ռեակցիոն ու ագրեսիվ ուժերի բացահայտ տեռորիստական ու շովինիստական դիկտատուրան: Ֆաշիզմն ամրապնդվեց և կարողացավ իրականացնել Գերմանիայի վերազինումը՝ շնորհիվ ամերիկյան ու անգլիական մոնոպոլիաների օգնության, որոնք նրան համարում էին հակակոմունիզմի հարվածային ուժը:*

*Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը տեսնում էին այն վտանգը, որը ներկայացնում էր ֆաշիստական պետությունների քաղաքականությունը, հաշվի էին առնում ստեղծված իրադրությունը և միջոցառումներ ձեռնարկում՝ ամրապնդելու երկրի պաշտպանունակությունը: Կուսակցությունը իրագործեց կարևոր միջոցառումներ, որոնց նպատակն էր վերակառուցել արդյունաբերության ու տրանսպորտի աշխատանքը՝ հաշվի առնելով պատերազմի ավելի ու ավելի ահագնացող վտանգը: Նախապատերազմյան տարիներին ստեղծված պաշտպանական արդյունաբերությունը երկրի զինված ուժերն ապահովեց ժամանակակից ռազմական տեխնիկայով:*

*Սովետական կառավարությունը եռանդուն ջանքեր ձեռնարկեց Եվրոպայի կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու համար՝ նպատակ ունենալով փակել պատերազմի ճանապարհը: Այդ ջանքերը հանդիպեցին արևմտյան քաղաքագետների՝ «մյունխենականների» դիմադրությանը, որոնք ձգտում էին ֆաշիստական ագրեսիան ուղղել ՍՍՀՄ-ի դեմ և դաշինքի մեջ մտնել Հիտլերի հետ: Այդ բարդ իրադրության մեջ Սովետական Միությունը Գերմանիայի հետ կնքեց չհարձակվելու պայմանագիր, որը խառնեց իմպերիալիստների հաշիվները և հնարավորություն տվեց ժամանակ շահել երկրի պաշտպանությունն ամրապնդելու համար: Սակայն այն պայմաններում անկարելի եղավ կանխել պատերազմը: Արևմուտքի կառավարող շրջանների թողտվությամբ հիտլերյան Գերմանիան սանձազերծեց երկրորդ համաշխարհային պատերազմը: Գրավելով Եվրոպայի շատ պետություններ, նա շարժվեց ՍՍՀՄ-ի դեմ:*

4. 1941 թվականի հունիսի 22-ին սկսված պատերազմը, որը Սովետական Միությանը պարտադրել էր գերմանական ֆաշիզմը, սոցիալիզմի ամենախոշոր պատերազմական բախումն էր իմպերիալիզմի հարվածային ուժերի հետ: Այն դարձավ սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը հանուն սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության, հանուն սոցիալիզմի:

*Գերմանական իմպերիալիզմն իր առջև նպատակ էր դրել ոչնչացնել աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, բնաջնջել միլիոնավոր մարդկանց, ստրկացնել Սովետական Միության ու շատ այլ երկրների ժողովուրդներին:*

*Հայրենական մեծ պատերազմը ամենածանրն էր ու ամենադաժանը այն բոլոր պատերազմներից, որ երբևէ ապրել էր մեր հայրենիքը: Մեզ առանձնապես դժնդակ փորձություններ վիճակվեցին պատերազմի սկզբին: Հիտլերականների ու նրանց արբանյակների վիթխարի, նախապես մոբիլիզացված բանակը, որը թմրեցված էր շովինիզմի ու ռասիզմի թույնով, խորը մխրճվեց մեր*

տերիտորիան։ Թշնամին հասավ մինչև Կովկասի նախալեռները, ճեղքեց-անցավ մինչև Վոլգա, շրջափակեց Լենինգրադը, սպառնում էր Մոսկվային։ Սովետական երկրի վրա մահացու վտանգ կախվեց։

Հիտլերականները օգտագործում էին ժամանակավոր առավելությունները՝ Գերմանիայի էկոնոմիկայի ու ողջ կյանքի ռազմականացումը, զավթողական պատերազմի երկարատև նախապատրաստությունը և Արևմուտքում մղած պատերազմական գործողությունների փորձը, սպառազինության ու զորքերի թվի գերազանցությունը, որոնք նախապես կենտրոնացված էին սահմանամերձ գոտիներում։ Նրանց տրամադրության տակ էին գրեթե ամբողջ Արևմտյան Եվրոպայի տնտեսական ու ռազմական ռեսուրսները։ Հիտլերյան Գերմանիան Եվրոպայի երկրներում զավթել էր սպառազինության ամբողջ զինանոցը, մետաղի, ստրատեգիական հումքի վիթխարի պաշարները, մետալուրգիական և ռազմական գործարանները։ Սովետական Միությունը ստիպված եղավ մենամարտի մեջ մտնել հսկայական ռազմական մեքենայի դեմ։

Իրենց դերը խաղացին այն սխալները, որոնք թույլ էին տվել հիտլերյան Գերմանիայի՝ մեզ վրա հարձակվելու հնարավոր ժամանակը գնահատելիս և դրա հետ կապված թերացումները, առաջին հարվածները ետ մղելուն նախապատրաստվելու գործում։ Զգալ տվեց նաև այն, որ այն ժամանակ սովետական զորքերը ժամանակակից պատերազմի պայմաններում խոշոր գործողություններ վարելու բավականաչափ փորձ չունեին։ Բայց պատերազմի արդեն սկզբնական ժամանակաշրջանը ցույց տվեց, որ հիտլերականների պատերազմական ավանտյուրան ձախողման է դատապարտված։ Մոսկվայի մոտ գերմանացիների ջախջախումը պատերազմի ընթացքում արմատական շրջադարձի սկիզբն էր։ Հիտլերյան «կայծակնային պատերազմի» պլանը վերջնականորեն թաղվեց. ամբողջ աշխարհի առջև պսակազերծվեց հիտլերյան բանակի «անպարտելիության» կեղծ առասպելը։

Ողջ սովետական ժողովուրդը ոտքի ելավ պաշտպանելու հայրենիքը։ Երկիրը վերածվեց միասնական ավյունով համակված մի հսկայական մարտական ճամբարի. ջախջախել թշնամուն, նրան վռնդել սովետական հողից, ոչնչացնել ֆաշիզմը։ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» կուսակցության լոզունգը դարձավ սովետական ժողովրդի կյանքի անսասան օրենքը։ Կուսակցությունը եռանդուն միջոցներ ձեռնարկեց թշնամու ջախջախումը կազմակերպելու, ռազմաճակատի ու թիկունքի ջանքերը միավորելու ուղղությամբ։ Ստեղծվեց Պաշտպանության պետական կոմիտե Ի. Վ. Ստալինի նախագահությամբ։ Հանրապետություններում, երկրամասերում և մարզերում կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները հսկայական աշխատանք կատարեցին բոլոր ուժերն ու միջոցները պաշտպանության համար մոբիլիզացնելու ուղղությամբ։

Մեր հերոս ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կարողացավ հաղթահարել պատերազմական գործողությունների առաջին շրջանի դժվարությունները և 1942—1943 թվականներին բեկման հասավ պատերազմի ընթացքում։ Ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած հաղթանակի ճանապարհի պատմական էտապները դարձան՝ հաղթանակը ստալինգրադյան վիթխարի ճակատամարտում, հիտլերյան զորքերի ջախջախումը Կուրսկի մոտ, նրանց խոշորագույն պարտությունները մյուս ճակատամարտերում։ 1944 թվականին գերմանա-ֆաշիստական զավթիչները լիովին վռնդվեցին Սովետական Միության տերիտորիայից, իսկ սովետական բանակի՝ պատերազմի վերջին տարվա հարձակողական գործողությունները վճռական դեր խաղացին Ավստրիայի, Ալբանիայի, Բուլղարիայի, Հունգարիայի, Նորվեգիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի ժողովուրդներին ֆաշիստական օկուպացումից ազատելու, ֆաշիստական կոալիցիայի դեմ վերջնական հաղթանակ տանելու գործում։

Սովետական ժողովուրդը պաշտպանեց սոցիալիստական հայրենիքը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նվաճումները։ Ֆաշիզմը կործանվեց։ Պատերազմն ավարտվեց այնտեղ, որտեղից եկել էր։ Ջախջախ-



ված գերմանա-ֆաշիստական բանակները անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվեցին։ Ջախջախվեց նաև միլիտարիստական Ճապոնիան։ ՍՍՀՄ-ը ռազմա-քաղաքական օգնություն ցույց տվեց Չինաստանի ու Կորեայի հեղափոխական ուժերին։ Պատերազմի գլխավոր հանցագործները հանձնվեցին դատի ու արժանի պատիժ կրեցին։ Համաշխարհային քաղաքակրթությունը փրկվեց ֆաշիզմի ժանտախտից։

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ հաղթանակը ձեռք բերվեց շատ ժողովուրդների համատեղ ջանքերով։ Պատերազմի ընթացքում ստեղծվեց հակահիտլերյան հզոր կոալիցիա։ Թշնամուն լուրջ հարվածներ հասցրին արևմտյան դաշնակիցները։ Քաջաբար կռվեցին Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի դաշնակից զորքերը։ Սակայն հատկապես սովետական ժողովուրդը, նրա հերոսական բանակը կրեցին պատերազմի հիմնական ծանրությունը, վճռական դեր խաղացին հիտլերյան Գերմանիային հաղթելու գործում։

Պատերազմը հսկայական զոհեր և ավերածություններ պատճառեց սովետական ժողովրդին։ 20 միլիոնից ավելի սովետական մարդ զոհվեց ճակատամարտերի դաշտերում, թաղվեց քաղաքների ու գյուղերի փլատակների տակ, գնդակահարվեց ֆաշիստական բանդիտների կողմից, տանջամահ արվեց հիտլերյան համակենտրոնացման ճամբարներում։ Դժվար է գտնել մի ընտանիք, որը պատերազմի տարիներին վիշտ կրած չլինի, հարազատներ ու մերձավորներ կորցրած չլինի։ Անհուն է պատերազմում կրած կորուստների կսկիծը։

Վիթխարի է պատերազմի պատճառած նյութական վնասը։ Ֆաշիստները ավերակույտերի վերածեցին 70 հազարից ավելի քաղաքներ, ավաններ, գյուղեր ու շեներ։ Երկիրը կորցրեց ազգային հարստության մոտավորապես 30 տոկոսը։ Պատմությունը չի իմացել այնպիսի համատարած բարբարոսություն ու անգթություն, որպիսին մեր հողում կատարեցին ֆաշիստական օկուպանտները։

Իմպերիալիզմի և նրա առավել հրեշավոր ծնունդի՝ ֆաշիզմի հետ տեղի ունեցած ռազմական վիթխարի ընդհարումից հաղթանակով դուրս եկավ սոցիալիստական հասարակական և պետական կարգը։ Սովետական Միության ուժի աղբյուրները հանդիսացան սոցիալիստական էկոնոմիկան, հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնությունը, սովետական հայրենասիրությունն ու ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, ժողովրդի համախմբվածությունը կոմունիստական կուսակցության շուրջը, սովետական ռազմիկների անօրինակ հերոսությունն ու արիությունը։ Դա սոցիալիստական գաղափարախոսության հաղթանակն էր իմպերիալիզմի ու ֆաշիզմի մարդատյաց գաղափարախոսության նկատմամբ։

Այդ պատերազմում հաղթեց սովետական ժողովուրդը։ Սովետական երկիրը մեկ մարդու նման ոտքի ելավ պաշտպանելու իր հայրենիքը։ Դա մի չտեսնված մասսայական, իսկապես համաժողովրդական հերոսություն էր։ Մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի փառապանծ պաշտպանների, Բրեստի ու Սևաստոպոլի, Լենինգրադի ու Ստալինգրադի, Օդեսայի ու Կիևի, մյուս քաղաքների սխրագործությունը հավիտյան կմնա որպես սովետական մարդկանց անսահման խիզախության և արիության օրինակ։ Որպես մեծ վշտի խորհրդանիշ, հայրենիքի անմար սիրո և երախտագետ հիշողության խորհրդանիշ պատերազմի տարիներին ընկած իր որդիների ու դուստրերի անմահ սխրագործության մասին, Կրեմլի պարսպի մոտ Անհայտ զինվորի գերեզմանին վառվում է փառքի հավերժական կրակը։

Այդ պատերազմում հաղթեցին սովետական զինված ուժերը։ Ստեղծված լինելով Հոկտեմբերյան նվաճումների պաշտպանության համար, նրանք իրենց մարտական դրոշները պատվով են տարել սովետական պետության ամբողջ պատմության ընթացքում։ Երբեք չեն մոռացվի Հայրենական պատերազմի տարիներին սովետական ռազմիկների կատարած սխրագործությունները։ Ֆաշիզմի նկատմամբ մեծ հաղթանակը ապահովվեց նաև սովետական ռազմագիտության և ռազմական արվեստի գերազանցության շնորհիվ։

Թշնամու թիկունքում համաժողովրդական պայքար ծավալվեց ֆաշիստա-

դիսացավ խամ ու խոպան հողերի յուրացումը։ Նյութական արտադրության աճը հնարավորություն տվեց իրականացնել ժողովրդի բարեկեցության բարձրացման մի շարք միջոցառումներ։ Բարձրացվեց բանվորների ու ծառայողների աշխատավարձը, զգալիորեն ավելացվեցին ծերության ու հաշմանդամության կենսաթոշակները, առանց աշխատավարձը պակասեցնելու կրճատվեց աշխատանքային շաբաթը, երկրում մասսայական բնակարանային շինարարություն ծավալվեց։ Նոր հաջողություններ ձեռք բերվեցին գիտության ու տեխնիկայի բնագավառում, հոգևոր կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Կրթության մասշտաբներով ու մակարդակով սովետական երկիրը ամուր կերպով առաջավոր տեղերից մեկը գրավեց աշխարհում։

Սովետական հասարակության զարգացման եռապատերազմյան հաջողությունները բարդ և պատասխանատու խնդիրներ դրեցին կոմունիստական կուսակցության առջև։ Կյանքը հաստատեց կուսակցության քաղաքական կուրսի ճշտությունը, ցույց տվեց, որ նա ընդունակ է տեսականորեն ընդհանրացնելու մասսաների փորձը և առաջ քաշելու քաղաքական ճիշտ լոզունգներ, բացահայտելու թույլ տրված սխալները և ուղղելու դրանք։ Վարելով սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման կուրս, կուսակցությունը XX համագումարում վճռականորեն դատապարտեց Ստալինի անձի պաշտամունքը, որն արտահայտվել էր մեկ մարդու դերի՝ մարքսիզմ-լենինիզմին խորթ փառաբանման մեջ, կոլեկտիվ ղեկավարության լենինյան սկզբունքից նահանջելու, անհիմն բռնությունների և սոցիալիստական օրինականության այլ խախտումների մեջ, որոնք վնաս էին հասցրել մեր հասարակությանը։ Այս խեղաթյուրումները, չնայած իրենց ամբողջ լրջությանը, չփոխեցին սոցիալիստական հասարակարգի բնույթը, չսասանեցին սոցիալիզմի հիմքերը։ Կուսակցությունը և ժողովուրդը խորապես հավատում էին կոմունիզմի գործին, աշխատում էին խանդավառությամբ, կենսագործելով լենինյան իդեալները, հաղթահարելով դժվարությունները, ժամանակավոր անհաջողություններն ու սխալները։

Կուսակցությունը միջոցներ ձեռք առավ անհատի պաշտամունքի հետևանքները կուսակցական, պետական ու գաղափարական աշխատանքի բոլոր բնագավառներում հաղթահարելու, լենինյան նորմաները և կուսակցական կյանքի սկզբունքները պահպանելու համար։ Ընդլայնվեցին միութենական հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի իրավունքները տնտեսական ու կուլտուրական շինարարության հարցերը լուծելիս, ինչպես նաև ձեռնարկությունների ղեկավարների իրավունքները։ Այս ամենի շնորհիվ երկրում ակտիվացան սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքը, կուսակցական, սովետական և տնտեսական ապարատի բոլոր օղակների աշխատանքը։ Է՛լ ավելի ամրապնդվեց և զարգացավ սովետական հասարակական և պետական կարգը, ամրացավ բանվորների, գյուղացիների, մտավորականների սոցիալ-քաղաքական, գաղափարական միասնությունը, առավել սերտ դարձավ Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը, նրանց համախմբվածությունը լենինյան կուսակցության շուրջը։

6. Սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի հեղափոխական-վերակերտիչ գործունեության գլխավոր արգասիքն է։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ստեղծումը, Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը փոխեցին հօգուտ սոցիալիզմի, ստեղծեցին ՍՍՀՄ-ում կապիտալիզմի վերականգնման անհնարինության ամուր երաշխիք, ապահովեցին սոցիալիզմի վերջնական հաղթանակը։

Երկիրը պայքարի ու հաղթանակների վիթխարի ուղի է անցել։ Ռահվիրաների ճանապարհը միշտ դժվար է։ Այն պահանջում է մշտական որոնումներ, խիստ բարդ խնդիրների լուծում, բազում հակասությունների ու խոչընդոտների հաղթահարում։ Հինգ տասնամյակները ցույց տվեցին, թե ինչպես որքան բարդ գործ է հասարակության սոցիալիստական վերափոխումը։



«... այդ գործը նոր է,— նշել է Վ. Ի. Լենինը,— պատմության մեջ չտեսնված, այդ չի կարելի գրքերում կարդալ» (Երկեր, հատ. 26, էջ 561)։ Պատմության մեջ առաջին անգամ սոցիալական վերափոխումները կատարվում էին հեղափոխական գործողության գիտականորեն հիմնավորված ծրագրի համաձայն։ Կուսակցությունից պահանջվում էին քաղաքական հասունություն, կազմակերպվածություն և տոկունություն, սոցիալիզմի կառուցման կուրսի հետևողական կիրառում, ստեղծագործական համարձակություն՝ տեսական ու գործնական բարդ պրոբլեմները մշակելիս, նոր հասարակարգի ստեղծման ուղիների, մեթոդների ու միջոցների բազմակի ստուգում։

Մեր կուսակցությունը դիմում էր սոցիալիստական շինարարության խնդիրների լուծմանը, չերկնչելով պրոբլեմի նորույթից ու վիթխարիությունից, դժվարություններից, անծանոթ ուղիներից, ժամանակավոր անհաջողություններից ու նահանջներից, որովհետև սոցիալիստական հեղափոխությունը իր թափով ու խորությամբ միլիոնավոր մասսաների մի վիթխարի սոցիալական ստեղծագործություն է։ Կուսակցությունը իր ուժերը քաղել է և քաղում է ժողովրդի հետ ունեցած ամուր ու լայն կապերից, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին հավատարիմ լինելուց, հեղափոխական տեսության ստեղծագործական, անդուլ զարգացումից, նվաճված արդյունքների մշտական քննադական ինքնաստուգումից։

Տասնամյակների ընթացքում կուտակվեց նոր հասարակարգի կառուցման շատ հարուստ փորձ։ «Երբ երկիրը ոտքը դրել է մեծագույն վերափոխումների ուղին,— ասել է Վ. Ի. Լենինը,— այն ժամանակ այդ երկրի և այդ երկրում հաղթանակած բանվոր դասակարգի կուսակցության վաստակն է հանդիսանում այն, որ մենք գործնականապես կից մոտեցել ենք այն խնդիրներին, որոնք առաջ դրվում էին վերացականորեն, տեսականորեն։ Այս փորձը չի մոռացվի։ Ինչ էլ կատարվելու լինի, որքան էլ որ ծանր լինեն ռուսական հեղափոխության և միջազգային սոցիալիստական հեղափոխության պերիպետիաները, այս փորձը չի կարելի խլել... Այդ փորձը մտավ պատմության մեջ իբրև սոցիալիզմի նվաճում և ապագա միջազգային հեղափոխությունը այդ փորձի վրա է կառուցելու իր սոցիալիստական շենքը» (Երկեր, հատ. 27, էջ 513)։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի պատմական նշանակությունն այն է, որ մեր կուսակցության ու ժողովրդի փորձով նոր հասարակարգի կառուցման մարքս-լենինյան տեսությունը գտավ իր լայն և անհերքելի հաստատումը։ Սովետական հասարակարգը գործնականորեն ցույց տվեց, որ մարքսիզմ-լենինիզմի գիտական տեսության կենսագործումը լիովին համապատասխանում է բանվորների ու գյուղացիների, բոլոր աշխատավորների արմատական շահերին, որ համակողմանի սոցիալական առաջադիմությունը հնարավոր է հասարակության միայն սոցիալիստական զարգացման ուղիներում, որ միայն սոցիալիզմն է ժողովուրդներին բերում սոցիալական ու ազգային ազատագրություն, իսկական դեմոկրատիա, կայուն խաղաղություն և ազատություն։ Շահագործման ու ճնշման փոխարեն սոցիալիզմը հաստատեց աշխատավոր դասակարգերի և ազգերի բարեկամություն, համագործակցություն և փոխօգնություն, տարերայնության և անարխիայի փոխարեն՝ տնտեսության, հասարակական կյանքի բոլոր կողմերի պլանային զարգացում. աշխատավոր մեծամասնության քաղաքական իրավազրկության փոխարեն՝ իսկական ժողովրդապետություն։ Սոցիալիզմը արմատապես փոխեց հանրային արտադրության նպատակը, աշխատավորներին վստահություն տվեց վաղվա օրվա նկատմամբ։ Սովետական մարդու վրա չի ծանրանում գործազրկության և աղքատության երկյուղը։ Սոցիալիզմը մարդկանց անձնական բախտը սերտորեն շաղկապում է ամբողջ հասարակության սոցիալական վերափոխումների և հաջողությունների հետ։ Սոցիալիստական սեփականությունը սկիզբ է դնում ազատ աշխատանքի դարաշրջանին՝ հանուն աշխատավոր մարդու լավագույն կյանքի։ Աշխատանքի ազատագրությունը անհատի իսկական ազատության հիմնական պայմանն է։ Սոցիալիզմը աշխատավոր մարդկանց ի սպաս է դրել նյութական և հոգևոր կուլտուրայի նվաճումները։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի պատմական նշանակությունը աչ-

րական լայն մասսաներին, բարելավել հաշվառման ու վերահսկողության սիստեմը, մշակել և ամենուրեք արմատավորել աշխատանքի գիտական կազմակերպումը, կիրառել ժամանակակից գիտատեխնիկական միջոցները:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մեծ նշանակություն են տալիս տնտեսական ու սոցիալական պրոցեսների գիտական ղեկավարմանը: Կենտկոմի նոյեմբերյան (1964 թ.), մարտյան և սեպտեմբերյան (1965 թ.) պլենումների մշակած և կուսակցության XXIII համագումարի հավանությանն արժանացած միջոցառումները երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր կյանքի ղեկավարումը կատարելագործելու ուղղությամբ նոր փուլ են նշանավորում կոմունիզմի ուղիով սովետական հասարակարգի զարգացման գործում:

Կոմունիզմը կարող է կառուցվել միայն սոցիալիզմի նվաճումների հիման վրա, նրա էկոնոմիկայի, սոցիալական կառուցվածքի, քաղաքական կազմակերպության և հոգևոր կյանքի հետագա զարգացման ու կատարելագործման հիման վրա:

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԵԿԵՑՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԸ

8. Գիտության ու տեխնիկայի զարգացման, մեքենայացման և ավտոմատացման, աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի հիման վրա կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը սովետական հասարակարգի գլխավոր տնտեսական խնդիրն է:

Ներկայումս սոցիալիստական արտադրությունը հասել է այնպիսի մակարդակի, որը հնարավորություն է տալիս հաջողությամբ իրագործելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման խնդիրը:

Սոցիալիզմի վճռական նվաճումներից և առավելություններից մեկը տնտեսական զարգացման կայուն, արագ տեմպերն են: 1929—1966 թվականներին արդյունաբերական արտադրության տարեկան միջին աճը ՍՍՀՄ-ում կազմել է 11,1 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում՝ 4,0, իսկ Անգլիայում ու Ֆրանսիայում՝ 2,5 տոկոս: Ինդուստրացման արագ տեմպերը մեր երկրին հնարավորություն են տվել հասնելու արդյունաբերական հսկայական վերելքի: 1913 թվականի համեմատությամբ 1966 թվականին արդյունաբերության արտադրանքն ավելացել է 66 անգամ, այդ թվում մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 538 անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 294, պողպատի արտադրությանը՝ 22,5, էլեկտրաէներգիայինը՝ 267, ցեմենտինը՝ 45, թեթև արդյունաբերության արտադրանքը՝ 16,2, սննդի արդյունաբերությանը՝ 12,8 անգամ, տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունն ավելացել է 23,1 անգամ:

Չնայած, որ ագրեսիան ետ մղելու և ժողովրդական տնտեսությունը վերականգնելու համար պահանջվեց 20 տարի, Սովետական Միությունը դարձավ զարգացած մեքենաշինության և էներգետիկայի, ժամանակակից մետալուրգիայի և վառելիքի արդյունաբերության, քիմիայի և էլեկտրոնիկայի երկիր: Ընթացիկ տարում մեր երկիրը հասավ տարեկան ավելի քան 100 միլիոն տոննա պողպատի արտադրության մակարդակին: Ներկայումս սովետական ինդուստրիան ի վիճակի է լուծելու արտադրական ու տեխնիկական բարդագույն խնդիրներ, ապահովելու երկրի ամբողջ էկոնոմիկայի զարգացման արագ տեմպեր:

Ինդուստրիայի հաջողությունները թույլ են տալիս անշեղորեն բարձրացնել կոլտնտեսությունների ու սովխոզների տեխնիկական զինվածությունը և զարգացնելու գյուղատնտեսական արտադրությունը: 1966 թվականի վերջին մեր գյուղատնտեսությունն ուներ 1.660 հազար տրակտոր, 531 հազար հացահատիկի կոմբայն: 1966 թվականին գյուղատնտեսության ընդհանուր էներգետիկ հզորությունները նախահեղափոխական մակարդակը գերազանցեցին 10 անգամ: Ներկայումս գրեթե բոլոր սովխոզներն ու կոլտնտեսությունները օգտվում են էլեկտրաէներգիայից: Էլեկտրականությունը ավելի ու ավելի լայնորեն է թափանցում տեխնոլոգիական պրոցեսները:



Սակայն գյուղատնտեսության զարգացման վրա բացասաբար էին անդրադառնում սոցիալիստական արտադրության տնտեսական օրենքների, նյութական շահագրգռվածության, հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգակցման սկզբունքների խախտումները, գյուղատնտեսական արտադրության ղեկավարման գործում տեղ գտած սուբյեկտիվիզմը: Կուսակցությունը եռանդուն միջոցներ ձեռնարկեց՝ վերացնելու գյուղատնտեսության ղեկավարման մեջ թույլ տրված սխալներն ու թերությունները: Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումում մշակվեց կոլտնտեսային ու սովխոզային արտադրության զարգացման տեմպերն արագացնելու տնտեսական ու քաղաքական միջոցառումների սիստեմ: Այդ քաղաքականության իրականացումը, գիտության ու տեխնիկայի նվաճումների, որակյալ կադրերի, տնտեսական ու բարոյական խթանների ճիշտ օգտագործումը անհրաժեշտ պայմաններ են ապահովում՝ արագացնելու գյուղատնտեսության զարգացումը, բարձրացնելու բերքատվությունը, ավելացնելու անասնապահական մթերքների արտադրությունը: 1966 թվականին արտադրվել է 171,2 միլիոն տոննա հացահատիկ կամ 1,8 անգամ ավելի, քան 1940 թվականին, 10,8 միլիոն տոննա միս կամ 2,3 անգամ ավելի, 1,2 միլիոն տոննա յուղ կամ 3,1 անգամ ավելի, քան 1940 թվականին:

Նոր հնգամյակի (1966—1970 թթ.) կատարումը հնարավորություն կտա ապահովելու մեր հասարակարգի զգալի առաջընթացը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղիով, ամրապնդելու երկրի տնտեսական ու պաշտպանական հզորությունը: Սոցիալիստական ամբողջ էկոնոմիկայի նոր վերելքի խնդիրը լուծվում է ժողովրդական տնտեսության առավել առաջադիմական, վճռական ճյուղերը առավելագույնս զարգացնելու, ամենաառաջավոր տեխնիկայի և աշխատանքի գիտական կազմակերպման հիման վրա աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, արտադրական ֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործումը բարելավելու, արտադրանքի որակը բարձրացնելու և խնայողության խստագույն ռեժիմ իրականացնելու հաշվին: Գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացման հիման վրա, մեքենայացման, քիմիացման և մելիորացիայի լայն զարգացման միջոցով զգալիորեն կավելանա գյուղատնտեսական մթերքների արտադրությունը:

Արդի գիտության ու տեխնիկայի բազայի վրա զարգացող սովետական էկոնոմիկան դառնում է ավելի ու ավելի հաշվեկշռված ու ներդաշնակ: Պահպանելով ծանր ինդուստրիայի աճի առավել արագ տեմպերը, կուսակցությունը վերցրեց բնակչության նյութական ու կուլտուրական պահանջմունքներն անմիջականորեն բավարարող արդյունաբերության ճյուղերի արագ զարգացման, այդ ճյուղերի տեխնիկական վերակառուցման, դրանց հումքային ու էներգետիկ բազայի ամրապնդման և ընդլայնման կուրս: Սպառման ապրանքների արտադրության և արտադրամիջոցների արտադրության աճի տեմպերի մերձեցումը ժողովրդական տնտեսության ներկայիս կառուցվածքային տեղաշարժերի կարևոր առանձնահատկություններից մեկն է:

Սովետական Միությունը հասել է էկոնոմիկայի աննգնաժամային, անընդհատ վերելքի, գիտության ու տեխնիկայի զարգացման արագ տեմպերի, աշխատունակ բնակչության զբաղվածության և ժողովրդի բարեկեցության բարձրացման: Ժողովրդական տնտեսության զարգացման պլանաչափությունը հնարավորություն է տալիս արդյունավետ կառավարել էկոնոմիկան համապետական մասշտաբներով, սահմանել օպտիմալ համամասնություններ, ռացիոնալ տեղաբաշխել արտադրողական ուժերը, ապահովել նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների խնայողություն: Սոցիալիստական պլանավորումը ընդգրկում է հանրային արտադրության բոլոր օղակները: Այն զուգակցվում է ձեռնարկությունների տնտեսական օպերատիվ ինքնագործունեության հետ և հենվում է աշխատավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնության վրա: ՍՍՀՄ-ի պլանային տնտեսության տեսությունն ու պրակտիկան խոշոր ավանդ են ժողովուրդների պատմական փորձում, կոմունիստական շինարարության ասպարեզում:

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման պլանների իրականացման գործում կարևոր նշանակություն ունի պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի հետևողական կենսագործումը: Այդ սիստեմն արտացոլում է սոցիալիստական տնտեսավարման փոփոխված պայմանները, ժամանակակից սոցիալիստական արտադրության աճած մասշտաբները, դրա կառուցվածքում տեղի ունեցած որակական փոփոխությունները և գիտատեխնիկական հեղափոխության պահանջները: Տնտեսական ռեֆորմը, լինելով իր էությամբ հետևողականորեն սոցիալիստական, արտահայտելով սոցիալիզմի տնտեսական հարաբերությունները արտադրողական ուժերի զարգացման մակարդակի ու բնույթի հետ համապատասխանեցնելու անհրաժեշտությունը, նոր մոտեցում է հանդիսանում էկոնոմիկայի կառավարման նկատմամբ: Դրա էությունն է ուժեղացնել ղեկավարման տնտեսական մեթոդների դերը, կատարելագործել պետական պլանավորումը և ընդլայնել ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, ըստ ամենայնի արմատավորել ու կատարելագործել տնտհաշվարկը: Ռեֆորմի հաջող իրագործումը զգալիորեն կախված է կենտրոնացված ղեկավարման և ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ճիշտ զուգակցումից, բարոյական ու նյութական խթանումից, սոցիալիստական հիման վրա ապրանքա-դրամական-հարաբերությունների հմուտ օգտագործումից և դրանց հետ կապված տնտեսական կատեգորիաներից՝ շահույթից, գնից, վարկից և այլ կատեգորիաներից, որոնք սոցիալիզմի պայմաններում սոցիալական նոր բովանդակություն են ստանում, ինչպես նաև մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու գաղափարա-դաստիարակչական աշխատանքի մակարդակից:

Նոր պայմաններում ավելի ռացիոնալ կերպով են զուգորդվում հասարակության, կոլեկտիվի և առանձին աշխատավորի շահերը, աճում է աշխատողների շահագրգռվածությունը բոլոր արտադրական ռեսուրսների առավել լիակատար օգտագործման, արտադրանքի որակի բարելավման հարցերում: Տնտեսական ռեֆորմը տանում է դեպի ժողովրդական մասսաների ստեղծագործական ակտիվության հետագա բարձրացում, արտադրության կառավարման գործում նրանց դերի բարձրացում, նպաստում է երկրի էկոնոմիկայի հետագա վերելքին:

9. Սոցիալիստական արտադրության անր ամուր բազա ստեղծեց սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրայի բարձրացման համար:

1966 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արդյունաբերության և շինարարության բանվորների ռեալ եկամուտները ավելացան 6,6 անգամ, գյուղացիների ռեալ եկամուտները մեկ աշխատողի հաշվով՝ 8,5 անգամ:

Մեզանում բարեկեցության աճը ապահովվում է, նախ և առաջ, բանվորների ու ծառայողների աշխատավարձի, կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտների բարձրացման, մանրածախ գների իջեցման, հարկերի կրճատման ու վերացման միջոցով. երկրորդ՝ բնակչության կարիքները ձրի բավարարելու նպատակով հանրային ֆոնդերի ընդլայնման և կրթության, բուժսպասարկման, սոցիալական ապահովության, հանգստի ասպարեզում արտոնություններ տալու հաշվին:

Ըստ աշխատանքի վարձատրությունը արդի պայմաններում աշխատավորների եկամուտների հիմնական աղբյուրն է: Միայն 1950-ից մինչև 1966 թվականը բանվորների ու ծառայողների դրամական միջին աշխատավարձը բարձրացել է ավելի քան 1,5 անգամ: Վերջին տարիներս նկատելիորեն աճել են ցածր վարձատրվող աշխատողների եկամուտները, ավելացել են կոլտնտեսականների եկամուտները, մտցվել է նրանց աշխատանքի երաշխավորված վարձատրություն: Սովետական մարդիկ սկսել են ավելի լավ սնվել ու հագնվել, ավելի հարուստ ու բազմակողմանի է դարձել նրանց հոգևոր կյանքը:

Սոցիալիստական հասարակարգում, որտեղ գործում է «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքը, աշխատանքը դառնում է բարեկեցության միակ աղբյուրն ու չափը, յուրաքան-



չյուր մարդու հասարակական դիրքի հիմնական չափանիշը: Սոցիալիզմի օրոք դեռևս պահպանվում են աշխատանքի բնույթի հարցում եղած սոցիալ-տնտեսական տարբերությունները: Ուստի, յուրաքանչյուր աշխատավորի նյութական վարձատրությունը որոշվում է հասարակության բարօրության համար կատարած նրա աշխատանքի որակով ու քանակով: Հավասարարական բաշխում մտցնելը կխարխլեր աշխատողների նյութական շահագրգռվածությունը աշխատանքների արդյունքների նկատմամբ, իրենց պրոֆեսիոնալ և կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ:

Սոցիալիստական հասարակարգը ստեղծում է մարդկանց բարոյական և նյութական շահագրգռվածություն աշխատանքի արտադրողականության բարձրացման, նրանց ընդունակությունների և տաղանդների զարգացման գործում: Հասարակության համար որքան կարելի է շատ և որքան կարելի է լավ բան անելու ձգտումը վառ արտահայտություն է գտնում մասսայական սոցիալիստական մրցության մեջ, կոմունիստական աշխատանքի շարժման մեջ, որն ընդգրկում է տասնյակ միլիոնավոր բանվորների, գյուղացիների, մտավորականների:

Պետության միջոցների հաշվին տարեցտարի բարելավվում է աշխատավորների սոցիալական ապահովագրությունը և կենսաթոշակային ապահովությունը: ՍՍՀՄ-ում 34 միլիոն մարդ ստանում է ծերության և հաշմանդամության կենսաթոշակ, ավելացվում են հիվանդության դեպքում երեխաների համար աշխատավորներին տրվող նպաստները, մեծ միջոցներ են հատկացվում բանվորների և ծառայողների բուժումն ու հանգիստը կազմակերպելու համար: Մտցված է կոլտնտեսականներին կենսաթոշակներով ապահովելու միասնական սիստեմ:

Սովետական հասարակարգում լուսավորությունը և ժողովրդական կրթությունը իրականացվում են հանրային ֆոնդերի հաշվին: Բուհերի և տեխնիկումների սովորողների զգալի մասին վճարվում են պետական թոշակներ, իսկ նրանց, ովքեր ուսումը համատեղում են արտադրական աշխատանքի հետ, տրվում են վճարովի լրացուցիչ արձակուրդներ:

Սպառման հանրային ֆոնդերը լայնորեն օգտագործվում են նյութական օգնություն ցույց տալու համար աշխատավորների ընտանիքներին՝ երեխաների խնամքի ու դաստիարակության գործում: Մանկական նախադպրոցական հիմնարկներում գտնվում է ավելի քան 8 միլիոն երեխա: Մեծ միջոցներ են հատկացվում բազմազավակ ու միայնակ մայրերին, հղիության և ծննդաբերության, երեխա ծնվելու դեպքում տրվող նպաստներին:

Ամբողջ բնակչության համար ապահովվում է ձրի բուժօգնություն: Բոլոր մասնագիտությունների բժիշկների թիվը կազմում է 578 հազար, կամ ավելի քան 20 անգամ շատ, քան հեղափոխությունից առաջ: Ծավալվել է հիվանդանոցների, բուժարանների, պոլիկլինիկաների, սանատորիաների, պանսիոնատների և հանգստյան տների լայն ցանցը: Աշխատավորների զգալի մասը ստանում է սանատորիաների և հանգստյան տների ձրի և արտոնյալ ուղեգրեր:

Մեր երկրում առավել կարևոր պրոբլեմներից մեկը բնակչության՝ բարեկարգ բնակարանի պահանջմունքի բավարարումն է: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը եռանդուն միջոցներ են ձեռնարկում այդ խնդիրները լուծելու համար: Բնակարանային շինարարության մասշտաբներով ու տեմպերով մեր երկիրը գտնվում է աշխարհում առաջին տեղերից մեկում: Ամեն տարի նոր բնակարաններ են փոխադրվում 10—11 միլիոն սովետական մարդիկ: Վերջին տասը տարում երկրի բոլոր բնակիչների գրեթե կեսը փոխադրվել է նոր բնակարաններ ու տներ, կամ բարելավել է իր բնակարանային պայմանները:

Սովետական պետությունը կրճատեց աշխատանքային շաբաթվա տևողությունը, պահպանելով և բարձրացնելով աշխատավարձը: Արդյունաբերության բանվորների հիմնական զանգվածի աշխատանքային շաբաթը կազմում է 41 ժամ՝ 18 ժամով պակաս, քան 1913 թվականին: Մինչև Հոկտեմբերի 50-ամյակը հիմնականում կավարտվի անցումը հնգօրյա աշխատանքային շաբաթի՝ երկու հանգստյան օրով:

լիստական հայրենիքը։ Սոցիալիստական դեմոկրատիան անհամատեղելի է անհատապաշտական ինքնակամության և քաղաքացիական պարտքի անարխիստական քամահրանքի հետ, հասարակական շահերին վնաս պատճառող ամեն մի գործողության հետ։

Սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը հնարավորություն է ընձեռում արագացնելու տնտեսական ու սոցիալական զարգացումը, արագորեն և արդյունավետորեն հասնելու կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը։

**13. Սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն է։**

Իր ամբողջ գործունեության ընթացքում կուսակցությունը ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմի վեհ ուսմունքով։ Հենվելով հեղափոխական տեսության, հասարակության օբյեկտիվ օրինաչափությունների ճանաչման վրա, կոմունիստական կուսակցությունը մշակում և իրականացնում է իր քաղաքականությունը տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքի բնագավառում։ Գիտության ու քաղաքականության օրգանական միասնությունը կուսակցական ղեկավարման կարևորագույն սկզբունքն է։

Մեծ Լենինը սովորեցնում էր, որ առանց հեղափոխական տեսության չի կարող լինել նաև հեղափոխական շարժում։ Կուսակցությունը, Վ. Ի. Լենինը մշակել են մարքսիստական տեսության այնպիսի արմատական պրոբլեմներ, ինչպիսիք են. պրոլետարական հեղափոխության և ազատագրական պայքարի ուղիները, հեղափոխության զարգացման խաղաղ և ոչ խաղաղ ուղիները, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը հեղափոխական պայքարում, պրոլետարիատի դիկտատուրան և կուսակցության ղեկավար դերը հեղափոխության և սոցիալիստական շինարարության մեջ, սոցիալիզմի կառուցման հնարավորությունները սկզբնապես մեկ երկրում, սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման ուղիները, գյուղացիության և մտավորականության ներգրավումը սոցիալիզմի կառուցմանը, ազգային հարցի լուծումը, կուլտուրական հեղափոխության բովանդակությունն ու մեթոդները և այլ հարցեր։

Ստեղծագործաբար զարգացնելով և հարստացնելով մարքս-լենինյան տեսությունը, կուսակցությունը լուսավորում է սովետական ժողովրդի ուղին կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Բացահայտելով սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու օրինաչափությունները, կուսակցությունը հիմնավորեց նյութա-տեխնիկական բազայի ստեղծման առաջնահերթ նշանակությունը կոմունիզմի հաղթանակի համար, մշակեց ժողովրդական տնտեսության կազմակերպման ու կառավարման գիտական սկզբունքները, տեսականորեն հիմնավորեց սոցիալիստական պետականության զարգացումը կոմունիստական ինքնավարության, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման և սոցիալիստական հասարակության աշխատավորների մեջ կոմունիստական գիտակցականության դաստիարակության ուղիները. մեր կուսակցությունը մեծ ավանդ է ներդնում արդի համաշխարհային զարգացման, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման հրատապ պրոբլեմների մշակման մեջ։

Սոցիալիստական հասարակարգի կառուցման գիտությունը, որը մարմնավորվել է ՍՍՀՄ-ում իրականորեն գոյություն ունեցող սոցիալիզմի մեջ, ակնառու ավանդ է մարքսիզմ-լենինիզմի գանձարանում։ Կուսակցության երեք ծրագրերը, որոնցից յուրաքանչյուրը համապատասխանում է սոցիալիզմի զարգացման կարևորագույն պատմական էտապներին, կուսակցության հեղափոխական մտքի և հեղափոխական պրակտիկայի խտացված արտահայտությունն են։

Ունենալով տեսական հսկայական հարստություն, կուտակելով հեղափոխական պայքարի պրակտիկայի և նոր հասարակարգի ստեղծման մեջ այդ տեսական հարստությունը կիրառելու անօրինակ փորձ, մեր կուսակցությունը բարձր է գնահատում մյուս երկրներում մարքս-լենինյան մտքի նվաճումները, հաշվի է առնում և դրանք օգտագործում իր տեսական ու պրակտիկ աշխատանքում, սոցիալիզմի ու կոմունիզմի համար մղվող պայքարում։



ՍՄԿԿ-ն նոր հասարակարգի կառուցման պրոցեսի հետ անխզելի կապի մեջ մշտապես զարգացող կենդանի քաղաքական օրգանիզմ է։ Նրա, որպես քաղաքական կազմակերպության, գործունեության անկապտելի պայմանը դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքն է։ Սովետական իշխանության հիսուն տարում կուսակցությունը աճել և դարձել է մի հսկայական ուժ. նրա շարքերում կա ավելի քան 12,8 միլիոն կոմունիստ՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների առավել առաջավոր ներկայացուցիչները։ Հոգատարությունը կուսակցության շարքերի անաղարտության մասին, այն մասին, որ յուրաքանչյուր կոմունիստ արժանապատվորեն կրի և արդարացնի ՍՄԿԿ-ի անդամի վսեմ կոչումը, կուսակցության, նրա բոլոր կազմակերպությունների կյանքի օրենքն է։ Բանվոր դասակարգը առաջատար դիրք է գրավում կուսակցության մեջ և այսուհետև նույնպես կգրավի։ Կոմունիստական կուսակցությունը բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի, ստեղծարար ժողովրդի մսից ու արյունից է։ Կուսակցությունը շարունակ զգում է նրա միահամուռ աջակցությունը։ Կուսակցության համար թանկ է աշխատավորների վստահությունը, նա այլ շահեր չունի, բացի ժողովրդի շահերից։

Կուսակցությունը պահպանում է գլխավոր կուրսի հաջորդայնությունը։ Կուսակցությունն այդ կուրսը պաշտպանել է տրոցկիզմի, մանրբուրժուական ավանտյուրիզմի, աջ օպորտունիստների, նացիոնալ-ուկլոնիստների և հակալենինյան այլ հոսանքների ու խմբերի դեմ մղված անհաշտ պայքարում։

ՍՄԿԿ-ն կուտակել է կոմունիստական շինարարության, երկրի ներքին ու արտաքին քաղաքականության ղեկավարման շատ հարուստ փորձ։ Իր ղեկավար դերն իրագործելով պետական ու հասարակական կազմակերպությունների սիստեմի միջոցով, կուսակցությունը նրանց ջանքերը միավորում և ուղղում է միասնական նպատակին, գործելով կազմակերպչական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի՝ իրեն ներհատուկ մեթոդներով։ Կուսակցությունը ըստ ամենայնի զարգացնում է սովետական և տնտեսական մարմինների նախաձեռնությունը, հասնելով նրանց գործունեության ըստ հնարավորին մեծ արդյունավետության։

Կուսակցությունը բարձր պահանջներ է առաջադրում կոմունիստներին, բարձրացնում է նրանց տեսական ու քաղաքական մակարդակը, նրանց դաստիարակում է լճացածության և հնամոլության նկատմամբ անհաշտության ոգով, պաշտպանում նորն ու առաջավորը։ Կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս գործարար և սկզբունքային քննադատությանն ու ինքնաքննադատությանը, որը նպաստում է կուսակցական, պետական և հասարակական կազմակերպությունների գործունեության բարելավմանը։

Սոցիալիզմի զարգացման համեմատ աճում է կուսակցության դերը, որը պայմանավորված է հասարակության վերափոխման խնդիրների մասշտաբների մեծացմամբ և դրանց բարդությամբ, մասսաների ստեղծագործական ակտիվության վերելքով, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմամբ։

Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թ.) և հաջորդ պլենումներում, XXIII համագումարում մշակվեցին կարևոր միջոցառումներ, որոնք նպատակ ունեն իրականացնել տնտեսական, քաղաքական և կուլտուրական շինարարության հասունացած խնդիրները։ Կուսակցության այդ որոշումների կենսագործման պայքարը այսօր կազմում է ՍՄԿԿ-ի և ամբողջ սովետական ժողովրդի գործունեության գլխավոր բովանդակությունը։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀՈԳԵՎՈՐ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**14. Սովետական հասարակարգում հոգևոր կուլտուրայի բոլոր հարստությունները ծառայում են ժողովրդի շահերին, կոմունիստական շինարարության գործին։**

Հեղափոխությունից առաջ բոլոր տիպերի հանրակրթական դպրոցներում կար 9.656 հազար սովորող, իսկ 1966 թվականին՝ 48.170 հազար։ Ցարական

Ռուսաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էր 127 հազար ուսանող, իսկ 1966 թվականին ՍՍՀՄ-ում՝ 4.123 հազար: 1966 թվականին երկրում կար 124 հազար մասսայական գրադարան. այսինքն՝ ինը անգամ շատ, քան հեղափոխությունից առաջ: Երկրում լայնորեն զարգացել են մամուլը, ռադիոն, կինոն, հեռուստատեսությունը, որոնք ինֆորմացիայի և կուլտուրայի արժեքներին աշխատավորությանը հաղորդակից դարձնելու մասսայական միջոց են, կոմունիստական դաստիարակության ակտիվ գործոն:

Սովետական կուլտուրայի լավագույն նվաճումները հաստատապես մտել են մեր ժողովրդի հոգևոր կյանքի մեջ, հարստացնում են ամբողջ մարդկության առաջադիմական կուլտուրայի գանձարանը, համաշխարհային ճանաչում վայելում: Սոցիալիստական կուլտուրան մերժում է գաղափարական ռեակցիայի բոլոր ձևերը, որոնք հոգեպես սորկացնում և զինաթափում են մարդուն: Սովետական կուլտուրան բարձր է պահում հեղափոխական հումանիզմի դրոշը:

XX դարը գիտատեխնիկական վիթխարի հեղաշրջման դար է: Տեղի է ունենում գիտությունը անմիջական արտադրողական ուժի վերածելու արագ պրոցես: Սակայն միայն սոցիալիստական հասարակարգն է հնարավորություններ բաց անում գիտական հետազոտությունների լայն ու պլանաչափ ծավալման, դրանց նվաճումները աշխատավոր մարդու օգտին գործադրելու, գիտատեխնիկական հեղաշրջման կողմից առաջադրվող սոցիալական պրոբլեմները հաջողությամբ լուծելու համար: Իրականանում է Կ. Մարքսի այն կանխատեսությունը, որ սոցիալիզմը որպես աշխատող հասարակություն, գիտականորեն կվերաբերվի իր հարաճուն չափերով առաջադիմող վերարտադրության պրոցեսին:

Սովետական իշխանության առաջին իսկ տարիներից գիտությունը դարձավ համապետական գործ, կուսակցության ու ժողովրդի մշտական հոգատարության առարկա: Սովետական պետությունը երկրի համար նույնիսկ ամենածանր տարիներին գիտահետազոտական հիմնարկների լայն ցանցի կազմակերպման, գիտության հիմնարար և կիրառական ուղղությունների զարգացման, գիտական հետազոտությունների էքսպերիմենտալ բազայի զարգացման, կադրերի պատրաստման համար միջոցներ չի խնայել: Գիտական հիմնարկներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում և ՍՍՀՄ-ի մյուս կազմակերպություններում աշխատում են 700 հազարից ավելի գիտական աշխատողներ: Դա աշխարհի բոլոր գիտական աշխատողների մեկ քառորդն է: Ստեղծված է ամբողջ երկրի մասշտաբով գիտության կոորդինացման ու կառավարման սիստեմ, որտեղ առաջատար դերը պատկանում է ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային և միութենական հանրապետությունների գիտությունների ակադեմիաներին:

Մեր ժողովուրդը իրավամբ հպարտանում է, որ աշխարհում առաջին սոցիալիստական տերությունը առաջ է քաշել կարկառուն գիտնականների, որոնք հսկայական ավանդ են ներդրել մարդկության գիտատեխնիկական առաջադիմության գործում և կազմում են հայրենական ու համաշխարհային գիտության փառքը:

Սովետական գիտությունը օգնել է արտադրության մեջ արմատավորելու տեխնոլոգիական նոր պրոցեսներ, ստեղծելու ատոմային հզոր արդյունաբերություն և էներգետիկա, յուրացնելու ընդերքի հսկայական հարստությունները, ստեղծելու գյուղատնտեսական կուլտուրաների և անասունների հիանալի տեսակներ: Այն մեծ հաջողությունների է հասել մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության, բժշկության, երկրաբանության և գիտելիքների այլ բնագավառներում: Մեր գիտության նվաճումները իրենց խտացված արտահայտությունը գտան տիեզերքի հետազոտման և յուրացման ասպարեզում: Մեր երկիրը բաց արեց տիեզերքի հետազոտման ուղին, արձակեց Երկրի առաջին արհեստական արբանյակը, իրագործեց մարդու առաջին տիեզերական թռիչքը: Սա սովետական գիտնականների, ինժեներների, տեխնիկների, բանվորների անձնվեր ջանքերի, աշխատանքի ու քանքարի արդյունքն է, մեր պանծալի տիեզերագնացների արիության ու հերոսության արդյունքը:

Մարքսիզմ-լենինիզմի մեթոդոլոգիայի հիման վրա զարգանում են հա-



սարակական գիտությունները: Պրակտիկայի, կոմունիստական շինարարության կենսական խնդիրների հետ եղած կապը, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական, հեղափոխական քննադատական ոգու զարգացումը հասարակական գիտությունների առաջադիմության կարևոր պահանջն են: Առաջնորդվելով կուսակցականության լենինյան սկզբունքով, հասարակական գիտությունները ավելի ու ավելի հարաճուն նշանակություն են ձեռք բերում աշխատավորների կոմունիստական դաստիարակության մեջ, բուրժուական գաղափարախոսության, օպորտունիստական զանազան հայացքների դեմ մղվող պայքարում:

Սովետական գիտնականների ջանքերը կենտրոնացվում են գիտության հեռանկարային, առաջատար տեսական ուղղությունների և ճյուղերի վրա, հետազոտությունների արդյունավետությունն ու գործնական էֆեկտիվությունը բարձրացնելու վրա: Կուսակցությունը հաստատակամորեն աշխատում է, որպեսզի գիտական հետազոտությունների արդյունքները արագորեն իրացվեն արտադրության մեջ: Գիտության կազմակերպման, նրա պլանավորման հետագա կատարելագործումը երիտասարդ, ընդունակ գիտնականներին առաջ քաշելն ու պաշտպանելը, ստեղծագործական գիտական որոնումը և գիտական քննարկումները գիտության արագ զարգացման անհրաժեշտ պայմաններն են:

Սոցիալիզմը լայն ասպարեզ բաց արեց գրականության ու արվեստի զարգացման համար: Սովետական իշխանության տարիներին ձևավորվեց սոցիալիստական ռեալիզմի արվեստը, որի բնորոշ գծերն են խոր ժողովրդայնությունն ու կոմունիստական կուսակցականությունը, հեղափոխական հումանիզմն ու քաղաքացիականությունը, ճշմարտացիությունն ու խոր ներթափանցումը իրականության մեջ, անհաշտվողական վերաբերմունքը բուրժուական գաղափարախոսության և բարոյախոսության նկատմամբ: Մեր արվեստին հատուկ են գաղափարական բարձր պահանջկոտությունը, անհաշտությունը այն ամենի նկատմամբ, ինչը խանգարում է առաջընթացին, նորարարության ոգին և գեղարվեստական հանդուգն որոնմանը: Սովետական արվեստը արտացոլում է սովետական ժողովրդի պատմական ուղին, նրա հերոսական գործերն ու պայքարը կոմունիզմի կառուցման համար: Ստեղծվեց գրողի նոր տիպ, որն իր քաղաքացիական կոչումը տեսնում է այն բանում, որ լինի նոր աշխարհի կառուցման մասնակիցը:

Երկրի կուլտուրական կյանքի օրգանական մասն է դարձել մասսայական, ինքնագործ արվեստը: Միլիոնավոր սովետական մարդիկ մասնակցելով ինքնագործ կոլեկտիվներին, զարգացնում են իրենց ձիրքերն ու գեղագիտական ճաշակը: Գեղարվեստական ինքնագործունեությունը կուլտուրական արժեքներին ժողովրդական զանգվածներին հաղորդակից դարձնելու, մարդու ներդաշնակ զարգացման հիանալի միջոց է:

Կուսակցությունը այսուհետև ևս անհրաժեշտ ամեն ինչ կանի սովետական հասարակության բազմակողմանի հոգևոր առաջադիմության համար:

**15. Աշխատավորներին կոմունիստական բարձր գիտակցականության ոգով դաստիարակելը կոմունիզմին անցնելու կարևոր պայմանն է:**

Տնտեսական ու քաղաքական վերափոխումները խոր փոփոխություններ առաջացրին հասարակական գիտակցության մեջ, հաստատվեց սովետական հասարակության գաղափարական միասնությունը: Մարքս-լենինյան գաղափարախոսությունը դարձել է սոցիալական զարգացման հզոր շարժիչ ուժը, սովետական մարդկանց համախմբվածության կարևոր գործոնը, նրանց հասարակական-քաղաքական և աշխատանքային ակտիվության աղբյուրը: Երկրում աճել են մարդկանց սերունդներ, որոնք դաստիարակված են կոմունիստական իդեալներին անսահման նվիրվածության ոգով, համոզված են մեր մեծ գործի արդարությանը: Կոփվել է սովետական մարդու՝ մարտիկի, հեղափոխականի, գիտակից աշխատավորի բնավորությունը:

Այս ամենը նպաստավոր պայմաններ են ստեղծում մարդկանց կոմունիստական դաստիարակության նոր, առավել բարդ խնդիրները լուծելու համար, մարդիկ որոնք իրենց մեջ ներդաշնակորեն զուգորդեն բարձր գաղափա-

բայնությունը, աշխատասիրությունն ու կազմակերպվածությունը, հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունը, ֆիզիկական կատարելությունը:

Համակողմանիորեն զարգացած անհատի դաստիարակությունը տևական ու բարդ պրոցես է, որը կախված է կյանքի նյութական ու կուլտուրական պայմաններից, գաղափարա-քաղաքական աշխատանքի խորությունից ու թափից: Սոցիալիստական գաղափարախոսությունը կոչված է գիտական, ռեալիստական պատկերացում ձևավորելու լուծվելիք խնդիրների բնույթի, կոմունիզմին անցնելու ուղիների մասին, բացահայտելու հաջորդայնությունը սովետական հասարակության զարգացման մեջ, ցույց տալու վեհ գաղափարների կապը մարդկանց կենսական հետաքրքրությունների հետ, ամենօրյա գործնական խնդիրների լուծման և դժվարությունների հաղթահարման հետ, հաստատելու խոսքի ու գործի, մտքի ու գործողության միասնությունը:

Արդի էտապում գաղափարական աշխատանքը տեղի է ունենում սովետական մարդկանց հասարակական-քաղաքական և աշխատանքային ակտիվությունը ծավալելու և խորացնելու իրադրության մեջ, միջազգային ասպարեզում դասակարգային լարված պայքարի պայմաններում: Այդ աշխատանքային գլխավոր խնդիրները սահմանված են կուսակցության ծրագրով, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներով: Դա ամենից առաջ քաղաքական բարձր գիտակցականության և աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակումն է, աշխատավորներին, երիտասարդներին սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, բուրժուական գաղափարախոսության նկատմամբ անհաշտության, սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով դաստիարակելն է:

Կուսակցությունն առաջնահերթ նշանակություն է տալիս կոմունիստների, առանձնապես ղեկավար կադրերի մարքս-լենինյան կրթությանը, բնակչության շրջանում գաղափարա-դաստիարակչական աշխատանքի բարելավմանը: Նա անդուլ կերպով կատարելագործում է կուսակցական կրթության սիստեմը, ինչպես նաև գաղափարա-քաղաքական և բարոյական դաստիարակության այնպիսի մասսայական միջոցները, ինչպիսիք են մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն, կինոն: Ինֆորմացիայի օպերատիվության բարձրացումը, կյանքի հետ պրոպագանդայի կապի ամրապնդումը, նրա տեսական բովանդակության խորացումը կուսակցությունը կարևորագույն միջոց է համարում գաղափարական աշխատանքի արդյունավետությունը ուժեղացնելու համար:

Գաղափարական աշխատանքում կուսակցությունը ելնում է լենինյան այն ցուցումից, որ գիտակից աշխատանքից և հասարակական գործունեությունից դուրս կոմունիստական դաստիարակություն չկա և չի կարող լինել: Կուսակցությունը վարում է աշխատավորներին հասարակական կյանքի պրակտիկ հարցերի քննարկման և լուծման գործում լայնորեն ներգրավելու կուրս:

Գիտատեխնիկական առաջադիմությունը, տնտեսական ռեֆորմը, սոցիալիստական դեմոկրատիայի կատարելագործումը բարձր պահանջներ են ներկայացնում հասարակության կյանքի բոլոր ոլորտներում մարդկային գործունեության բնույթին ու բովանդակության, մարդկանց գիտակցականության, կազմակերպվածության ու պատասխանատվության մակարդակին: Որակյալ մասնագետների պատրաստումը պետք է զուգորդվի վեհ իդեալների, կոմունիստական բարոյականության, սոցիալիստական համակեցության կանոնների նկատմամբ հարգանքի ձևավորման հետ: Կարգապահություն և ինքնակարգապահություն, հոգատար վերաբերմունք ժողովրդական բարիքի նկատմամբ, սկզբունքայնություն, մարդկանց փոխադարձ հարգանք, սեփական արժանապատվության և քաղաքացիականության զգացում, անհաշտություն դեպի հակահասարակական վարքագծի ամեն մի դրսևորում՝ սրանք կոմունիստական բարոյականության անկապտելի հատկություններն են: Համոզմունքի օրինակը աճող սերնդի դաստիարակության անհրաժեշտ պայմանն է: Սովետական մարդու գաղափարա-բարոյական հատկությունների ձևավորման գործում հսկայական դեր է խաղում աշխատանքային կոլեկտիվը, որը սոցիալիստա-



կան հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր կյանքի կարևոր օղակն է:

Ներկա պայմաններում մեծ սրություն է ստանում գաղափարական պայքարը համաշխարհային ասպարեզում: Որքան շատ հաջողություններ է ձեռք բերում սոցիալիզմը, որքան խորանում են համաշխարհային կապիտալիզմի հակասությունները, այնքան նրբին են դառնում կոմունիզմի դեմ իմպերիալիստների պայքարի մեթոդները: Բուրժուական պրոպագանդան փորձում է ստվերել արդի կապիտալիստական աշխարհի գլխավոր սոցիալական հակամարտությունները ու արատները, բթացնել քաղաքական գիտակցությունը, ջլատել աշխատավորների կամքը սոցիալիզմի համար մղվող պայքարում: Իմպերիալիստական գաղափարախոսությունը ձգտում է մասսաներին պատվաստել անհատապաշտություն, նրանց հեռու պահել քաղաքականությունից, հասարակական արմատական պրոբլեմների լուծումից: Նա հույսը դնում է մարդկանց գիտակցության մեջ անցյալի նախապաշարմունքների և մնացուկների աշխուժացման վրա: Խորթ բարքերի և ավանդների ազդեցության դեմ մղվող պայքարը, մարդկանց գիտակցության և վարքագծի մեջ բացասական երևույթների հաղթահարումը կոմունիստական դաստիարակության լուրջ խնդիրն է:

Բուրժուական գաղափարախոսության, հակակոմունիզմի դեմ մղվող պայքարում չեզոքություն չկա և չի կարող լինել: Դա դասակարգային պայքար է, պայքար հանուն մարդու, հանուն մարդկության ազատության ու առաջադիմության հաղթանակի:

Մեր նպատակը կոմունիզմն է: Կուսակցությունը անմիջական գործնական խնդիրների լուծումը կապում է գլխավոր հեռանկարի իրականացման՝ կոմունիզմի կառուցման հետ:

1917 թվականի հոկտեմբերյան օրերից պատերազմական դաժան փորձությունների և ստեղծարար աշխատանքի տարիների միջով է անցնում կոմունիզմի համար մղվող պայքարի պանծալի ուղին, կոմունիզմ, որը ի մի է ձուլել մեր անցյալը, ներկան և ապագան: Կոմունիզմ կառուցողների նոր սերունդները սրբությամբ պահպանում են հեղափոխական ավանդները և ամեն ինչ անում են մարքսիզմ-լենինիզմի մեծ իդեալները իրականացնելու համար:

Կոմունիզմի կառուցումը բարդ պրոցես է: Ընդգրկելով նյութական արտադրության ոլորտը, սոցիալական հարաբերություններն ու հասարակական գիտակցությունը, այն կապված է դժվարությունների և հակասությունների հաղթահարման, բնության ուժերի նվաճման հետ, նորանոր խնդիրների լուծման արդյունավետ միջոցներ որոնելու, իմպերիալիզմի դեմ պայքարելու հետ: Բայց մեծ նպատակը ծնում է ժողովրդի մեծ եռանդ: Կոմունիզմը ստեղծվում է ֆաբրիկաներում, գործարաններում, կոլտնտեսային ու սովխոզային դաշտերում բանվորների և գյուղացիների ամենօրյա հերոսական աշխատանքով, մտավորականության ստեղծագործությամբ:

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելը բնապատմական պրոցես է: Զարգանալով և ամրապնդվելով, սոցիալիստական հասարակարգը օրինաչափորեն վերաճում է կոմունիստականի: Առաջ շարժվելով, մենք կարող ենք գնալ միայն դեպի կոմունիզմ: Արհեստականորեն արգելակելու կամ անհրաժեշտ փուլերի վրայով թռչելու փորձերը անխուսափելիորեն կոնֆլիկտի մեջ են մտնում հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքների հետ: Կառուցելով գործարաններ ու ֆաբրիկաներ, ամրապնդելով կոլտնտեսություններն ու սովխոզները, կատարելագործելով հասարակական հարաբերությունները, բազմապատկելով հոգևոր հարստությունները, մենք ստեղծում ենք կոմունիստական իդեալներին նվիրված գիտակից և ազատ աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն: Կոմունիզմը ռեալ հումանիզմի մարմնացումն է: Կուսակցության ծրագրային սկզբունքն է՝ «Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»:

Սովետական երկիրը կոմունիզմի կառուցման համար ունի ամեն անհրաժեշտ բան՝ կադրեր, հզոր ինդուստրիա և զարգացած գյուղատնտեսություն, ժամանակակից գիտություն և տեխնիկա, առաջավոր հասարակարգ, հսկայա-

սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հզորության աճը և ուժեղացնում նրա ազդեցությունը հասարակական զարգացման ամբողջ ընթացքի վրա:

Գտնվելով իմպերիալիզմի դեմ, խաղաղության և մարդկության սոցիալիստական առաջադիմության համար մղվող պայքարի առաջագծում, սոցիալիստական համագործակցությունը վճռական ավանդ է ներդնում հեղափոխական պրոցեսի զարգացման գործում:

19. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ուժգին հարված հասցրեց իմպերիալիստական գաղութային տիրապետության ամբողջ սիստեմին, հանդիսացավ ազգային-ազատագրական շարժման զարգացման հզոր խթանը:

Հոկտեմբերի հաղթանակից հետո սկսվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամը: Սովետների հանրապետությունը, պրակտիկայում իրագործելով սոցիալիստական հեղափոխության դաշինքը ազգային-ազատագրական շարժման հետ, դարձավ ժողովուրդների ազատագրական պայքարի օրինակը և հուսալի հենարանը:

Հետևելով Վ. Ի. Լենինի պատգամներին, մեր երկիրը իր ամբողջ պատմության ընթացքում անշեղորեն վարում է ազգային ազատագրության ուժերին ըստ ամենայնի օգնելու կուրս այն պայքարում, որ նրանք մղում են ընդդեմ իմպերիալիզմի, հանուն ազատության ու սոցիալական առաջադիմության:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, իմպերիալիզմի ընդհանուր թուլացման, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջացման, բանվորական ու դեմոկրատական շարժման հզոր վերելքի իրադրության մեջ, հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական հեղափոխությունների հարվածների ներքո քայքայվեց ժողովուրդների ճնշման գաղութային սիստեմը, որն ստեղծել էր կապիտալիզմը: Նախկին գաղութային աշխարհի տեղում առաջացան ավելի քան 70 անկախ ազգային պետություններ:

Իմպերիալիստները փորձում են նախկին գաղութները պահել տնտեսական ու սոցիալական կախման ցանցերում, արգելակել նրանց սոցիալական ու կուլտուրական առաջադիմությունը: Սակայն ժողովուրդները մտադիր չեն մնալ իմպերիալիստական շահագործման օբյեկտներ: Նրանք ձգտում են ամրապնդել իրենց անկախությունը, որոնում են տնտեսական ու սոցիալական զարգացման մի այնպիսի ուղի, որը նրանց հնարավորություն տար առավել կարճ ժամանակում լուծելու իրենց առջև ծառացած բարդ պրոբլեմները: Նրանք իրենց առջև տեսնում են այն բանի ռեալ օրինակը, թե ինչպես ցարիզմի կողմից ճնշված Ռուսաստանի ազգային ծայրամասերը հենվելով ռուսական հաղթանակած պրոլետարիատի աջակցության վրա, պատմական կարճ ժամանակում վերացրին տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը, հիանալի հաջողությունների հասան հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Դա կարելի է տեսնել հաջողությամբ սոցիալիզմ կառուցող Մոնղոլիայի Ժողովրդական Հանրապետության օրինակով:

Ազատագրված որոշ պետությունների հեղափոխական-դեմոկրատական ուժերը իրենց զարգացումը տարան ոչկապիտալիստական ուղիով և հիմա գործնական լուրջ քայլեր են կատարում այդ ուղղությամբ: Ընդլայնվում է հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների կապերը միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման հետ, ուժեղանում է նրանց հետաքրքրությունը գիտական սոցիալիզմի գաղափարախոսության նկատմամբ: Այդ երկրների հաջող զարգացման, նրանց առջև ծառացող ինչպես ներքին, այնպես էլ արտաքին բնույթի լուրջ դժվարությունների հաղթահարման կարևորագույն նախադրյալը ազգային-դեմոկրատական, բոլոր առաջադիմական ուժերի միասնությունն է սոցիալիստական վերափոխումների իրականացման համար մղվող պայքարում:

Ազգային երիտասարդ շատ պետություններում ուժեղանում է սահմանազատումը առաջադիմական սոցիալական զարգացման համար մարտնչող հասարակական ուժերի և իմպերիալիզմի հետ գործարքի մեջ մտնող ռեակցիոն շրջանների միջև: Իմպերիալիզմը, և ամենից առաջ ԱՄՆ-ի իմպերիալիզմը, եղել և մնում է ազգային-ազատագրական շարժման գլխավոր թշնամին: Հենց նա է, որ հենվելով ներքին ռեակցիայի վրա, կազմակերպում է դավադրություններ ու հեղաշրջումներ, բորբոքում ազգամիջյան երկպառակություններ, նպաստելով ռեակցիոն նացիոնալիզմի աճին, հրահրում է տերիտորիալ վեճեր ազատագրված ժողովուրդների միջև:

Հերոսական այն պայքարը, որը նախկին գաղութային ու կիսագաղութային աշխարհի ժողովուրդները մղում են իմպերիալիզմի, գաղութատիրության ու նեոգաղութատիրության դեմ, ակտիվորեն պաշտպանվում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի կողմից, որը նրան ցույց է տալիս քաղաքական, տնտեսական օգնություն, իսկ երբ անհրաժեշտ է՝ օգնում է այդ երկրների զինված ուժերի ամրապնդման, նրանց պաշտպանունակության ուժեղացման գործին: Սոցիալիզմի ու ազգային ազատագրական շարժման ուժերի դաշինքը իմպերիալիզմի դեմ, ազատության, ազգային անկախության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի հաջողության կարևոր նախադրյալն է:

20. Հոկտեմբերի սկսած աշխարհի հեղափոխական վերափոխման պրոցեսը նոր իրադրություն ստեղծեց այն պայքարում, որ մղում է միջազգային բանվոր դասակարգը իր մերձավորագույն և վերջնական նպատակների համար: Աճեցին նրա տարբեր ջոկատների կազմակերպվածությունը և ինտերնացիոնալ կապերը: Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը բանվոր դասակարգին կանգնեցրեց արդի դարաշրջանի կենտրոնում:

Սոցիալիզմի ուժերի ամրապնդումը ավելի ու ավելի մեծ ազդեցություն է գործում դասակարգային ուժերի հարաբերակցության վրա բուրժուական աշխարհում: Բուրժուական հասարակության ընդերքում ստեղծվեցին սոցիալիստական հեղափոխության նյութական օբյեկտիվ նախադրյալները: Հարաճուն դասակարգային հակասությունների ազդեցությամբ հետզհետե ստեղծվում են նաև հեղափոխական ճանապարհով սոցիալիզմին անցնելու սուբյեկտիվ պայմաններ: Բուրժուազիայի խորամանկ տակտիկան, նրա հարկադրյալ զիջումները չկարողացան կասեցնել ժողովրդական զանգվածների հեղափոխականացման պրոցեսը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը ընդլայնեց կապիտալի երկրների մասսաների դասակարգային, սոցիալիստական գիտակցության դաստիարակման հնարավորությունները: Նրանք կենդանի պրակտիկայից այժմ տեղեկանում են սոցիալիզմի առավելությունների մասին: Սոցիալիզմի պայմաններում աշխատավոր մարդու դրության արմատական փոփոխումը պրոլետարներին պայքարի նոր ազդակներ տվեց: Արևմուտքի աշխատավորները առավել կարևոր նվաճումների հասան Հոկտեմբերի, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման հաջողությունների անմիջական ազդեցությամբ: Այդ հաջողությունները, սոցիալիստական երկրների օրինակի ուժը հզոր խթան են դասակարգային մարտերի խորացման համար, որոնք այժմ ծավալվում են ավելի ու ավելի բազմազան ձևերով:

Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում, երբ էկոնոմիկայի ոլորտում ևս որպես պրոլետարիատի անմիջական հակառակորդ հանդես են գալիս ոչ միայն առանձին ձեռնարկատերերն ու նրանց միավորումները, այլև ինքը՝ բուրժուական պետությունը, աշխատավորների տնտեսական պայքարը օբյեկտիվորեն քաղաքական բնույթ է ստանում: Միաժամանակ բանվոր դասակարգը ավելի ու ավելի հաստատակամորեն առաջ է քաշում անմիջական քաղաքական պահանջները, հանդես գալով մոնոպոլիստների իշխանության դեմ, իմպերիալիստական կառավարությունների ագրեսիվ ու ռեակցիոն կուրսի դեմ, հանուն դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության:

Կապիտալի երկրների տնտեսական ու քաղաքական կյանքում բանվոր դասակարգի դերը կես դարում զգալիորեն աճեց: Աճեցին ու ամրապնդվեցին կապիտալիստական երկրների առաջադիմական արհմիությունները, որոնք մեծ դեր են խաղում այն պայքարում, որը բանվոր դասակարգը մղում է կապի-

տալիստական մոնոպոլիաների հարձակման դեմ, հանուն աշխատավորների տնտեսական, սոցիալական ու քաղաքական իրավունքների։ Ամրապնդվում է արհմիությունների միջազգային միասնությունը իմպերիալիզմի դեմ, խաղաղության ու սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարում։

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը ուժեղացնում է իր մարտական ելույթները մոնոպոլիաների և նրանց հնազանդ կառավարությունների ամենազորության դեմ։ Եվ նրան մինչև օրս չի հաջողվել իրագործել իր սոցիալիստական իդեալները, ապա դա զգալի չափով կապված է նրա շարքերի պառակտման հետ։ Ներկայումս այդ պառակտումը հաղթահարելու ավելի բարենպաստ հնարավորություններ են ստեղծվում։ Սոցիալիզմի հաջողությունները համոզիչ կերպով ապացուցում են, որ միայն հասարակության արմատական վերափոխման ուղիներով կարելի է հասնել բանվոր դասակարգի վերջնական նպատակների իրագործմանը։ Դրա հետ մեկտեղ պատմությունը ապացուցեց ռեֆորմիստական ուղու ամլությունը։ Սոցիալ-դեմոկրատական կառավարությունները ոչ մի երկրում չեն դիպել կապիտալիստական տիրապետության հիմքերին։

Սոցիալ-դեմոկրատների, կաթոլիկական կուսակցությունների ու արհմիությունների ետևից գնացող բանվորները ավելի ու ավելի են համոզվում, որ անհրաժեշտ է դասակարգային մոտեցում սոցիալական պրոբլեմներին, համագործակցություն կոմունիստների հետ՝ այդ պրոբլեմների լուծման գործում։

Հոկտեմբերից հետո անցած կես դարում տարբեր երկրներում և համաշխարհային մասշտաբով դասակարգային ուժերի հարաբերակցության մեջ տեղի ունեցած փոփոխություններն ընդլայնեցին կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու հնարավորությունները, հարստացրին սոցիալիստական հեղափոխության միջոցների զինանոցը։

Այն պայմաններում, երբ աճում ու ամրապնդվում է հակամոնոպոլիստական միասնական ճակատը, երբ բանվոր դասակարգն ու նրա դաշնակիցները ավելի ու ավելի մեծ քաղաքական կշիռ են ձեռք բերում հասարակության մեջ, նրանք հնարավորություն են ստանում ավելի լայնորեն օգտագործելու նվաճված դեմոկրատական իրավունքները և հաստատությունները մոնոպոլիաների տիրապետության դեմ պայքարելու համար։ Դեմոկրատական ռեֆորմները, որոնք արտահայտում են բանվոր դասակարգի և աշխատավորների ոչ պրոլետարական խավերի շահերը և իրագործվում են մասսաների ճնշմամբ, տանում են դեպի առաջադիմական ուժերի դիրքերի ամրապնդումը, ընդլայնում են կապիտալի դիրքերի վրա վճռական հարձակման պլացդարմը։ Բուրժուական պետություններում ժողովրդական զանգվածների իրավունքների ընդլայնման համար մղվող պայքարը դասակարգային մարտերի կարևոր ոլորտն է, սոցիալիզմի համար մղվող պայքարի բաղկացուցիչ մասը։

Հրատապ նշանակություն ունի ՍՄԿԿ XX—XXIII համագումարների և 1957 ու 1960 թվականների Մոսկվայի խորհրդակցությունների զարգացրած մարքս-լենինյան այն թեզը, որ սոցիալիզմին անցնելիս հնարավոր է օգտագործել պայքարի զանազան՝ խաղաղ և ոչ խաղաղ ձևեր, նայած այս կամ այն երկրում դասակարգային ուժերի կոնկրետ հարաբերակցությանը, բանվոր դասակարգի կազմակերպվածությանն ու քաղաքական հասունությանը, նրա ավանգարդի հեղինակությանն ու ընդունակություններին, տիրապետող դասակարգերի դիմադրության աստիճանին, միջազգային իրադրությանը։

Մեր դարաշրջանում ամեն մի երկրի բանվոր դասակարգը իր հեղափոխական պայքարում կարող է հենվել բանվորական շարժման հաղթանակած ջոկատների՝ սոցիալիստական երկրների աշխատավորների պաշտպանության վրա, կարող է օգտագործել սոցիալիզմի երկրների, և ամենից առաջ Հոկտեմբերի հայրենիքի փորձը, որոնց հսկայական նվաճումները օգնում են աշխատավորներին, նրանց հեղափոխական ավանգարդին։ Այս ամենի մեջ դրսևորվում է կապիտալի երկրների պրոլետարիատի պայքարի օրգանական կապը Հոկտեմբերի նվաճումների հետ, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հաջողությունների հետ։



**21. Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակը նշանավորեց արդի միջազգային կոմունիստական շարժման ծնունդը։ Համաշխարհային կոմունիստական շարժման զարգացումն ընթանում է Հոկտեմբերի գաղափարների դրոշի ներքո։**

Հոկտեմբերյան հեղափոխության օրինակով համաշխարհային պրոլետարիատը համոզվեց, թե իրեն որքան անհրաժեշտ է նոր տիպի կուսակցությունը, մարքս-լենինյան տեսությամբ զինված հեղափոխական գործողության կուսակցությունը, մասսաների գլուխ կանգնած կուսակցությունը։

Կոմունիստական կուսակցությունների ստեղծման ու ամրապնդման գործում հսկայական դեր խաղաց Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ կազմակերպված Կոմունիստական ինտերնացիոնալը։ Կոմունիստական ինտերնացիոնալը նրանց համար դարձավ մարտական հեղափոխական շտաբ, մարքսիզմ-լենինիզմին տիրապետելու դպրոց, նոր պայմաններում նրա ստեղծագործական մշակման կենտրոն, մասսաների մեջ կոմունիզմի գաղափարների պրոպագանդայի դպրոց, ինտերնացիոնալիզմի դպրոց։ Կոմինտերնը մեծ դեր խաղաց կոմունիստական շարժման ականավոր լիդերների և մարտական կադրերի փառապանծ կոհորտայի դաստիարակության գործում։

Անցած կես դարում կոմունիստական շարժումը աճեց ու դարձավ մի վիթխարի ուժ։ Նա իրոք համաշխարհային դարձավ։ Կոմունիստական կուսակցությունները փաստորեն գոյություն ունեն այն բոլոր երկրներում, որտեղ բանվոր դասակարգ կա։

Կոմունիստները առավել հետևողականորեն են արտահայտում բոլոր շահագործվողների ու ճնշվածների շահերը, անձնվիրաբար պայքարում են ժողովուրդների կենսական շահերի համար։ Հենց այդ պատճառով էլ միջազգային բանվոր դասակարգի ավանգարդը այժմ իր ազդեցությունը, ըստ էության, տարածում է աշխատավոր բնակչության ավելի ու ավելի լայն խավերի վրա, հանդես է գալիս որպես համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության ու սոցիալիզմի փոխելու կարևորագույն գործոններից մեկը։

Կեսդարյա փորձով ապացուցված է, որ կոմունիստական շարժման ուժը հավատարմությունն է մարքսիզմ-լենինիզմին։ Կոմունիզմի մասին գիտությունից դուրս չկա ու չի կարող լինել կոմունիստական շարժում։ Մշակելով իր ստրատեգիան ու տակտիկան, սոցիալիստական պետությունների, կապիտալի երկրների և ազատագրված երկրների բանվոր դասակարգի կոմունիստական ավանգարդը զարգացնում և հարստացնում է Հոկտեմբերի ժառանգությունը։ Մարքսիստ-լենինյանների համատեղ, կոլեկտիվ աշխատանքի ստեղծագործական արդյունքը 1957 և 1960 թվականների Մոսկվայի խորհրդակցությունների Դեկլարացիայում և Հայտարարության մեջ ձևակերպված գլխավոր գիծն է։

Միջազգային կոմունիստական շարժման ամենահրատապ պրոբլեմը նրա միասնության ապահովումն է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա։ Այդ միասնությունը ներկա էտապում ձեռք է բերվում ընդհանուր խնդիրների լուծման համատեղ գործողություններով, կուսակցությունների երկկողմ և բազմակողմ հանդիպումներով, կարծիքների ընկերական փոխանակմամբ, փորձի փոխադարձ ուսումնասիրությամբ։ Աշխարհի կոմունիստների միասնության ամրապնդման համար մեծ նշանակություն ունեցավ Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Կարլովի Վարիի կոնֆերանսը, որը նվիրված էր Եվրոպայի խաղաղության ու անվտանգության պրոբլեմներին։ Առավել կարևոր պրոբլեմների կոլեկտիվ քննարկման և գործողությունների միասնական ծրագրի մշակման փորձված ձևեր են կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունները։

Արդի պայմաններում առանձնապես կարևոր նշանակություն է ստանում կոմունիստների մեծ բանակի ազգային ու ինտերնացիոնալ խնդիրների ճիշտ զուգորդման հարցը։ Ազգային խնդիրների լուծման համար մղվող պայքարից

Վիետնամի ժողովրդի արդար գործը կհաղթանակի։ Սովետական մարդիկ ամբողջովին պաշտպանում են արաբական պետությունների ժողովուրդների արդար պայքարը Իսրայելի ագրեսիվ գործողությունների դեմ, նրա իմպերիալիստական հովանավորողների դեմ։

Հավատարիմ լինելով Լենինի պատգամներին, սովետական ժողովուրդը և նրա կոմունիստական կուսակցությունը կես դարի ընթացքում անշեղորեն հետևել են պրոլետարական ինտերնացիոնալիզմի գծին, ելել են հաղթանակած սոցիալիզմի երկրի ինտերնացիոնալ և ազգային խնդիրների անբաժանության սկզբունքից։

Սովետական ժողովրդի վեհ նպատակը՝ կոմունիզմի կառուցումը, միևնույն ժամանակ նրա գլխավոր ինտերնացիոնալ գործն է։ Սովետական մարդկանց հերոսական աշխատանքով մեր երկիրը դարձել է սոցիալիզմի անխորտակելի ամրոց, աճում է նրա ազդեցությունը ամբողջ աշխարհում։ Նոր հասարակարգի ստեղծումը, նրա տնտեսական ու պաշտպանական հզորության մշտական աճը համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը ի վնաս իմպերիալիզմի ու ռեակցիայի փոփոխելու վճռական պայմաններից մեկն են, ամրապնդում են համաշխարհային մասշտաբով սոցիալիստական հեղափոխության հաղթանակի նյութական, քաղաքական ու գաղափարական նախադրյալները։

Սովետական արտաքին քաղաքականության հիմնական խնդիրն է ապահովել կոմունիզմի կառուցման բարենպաստ պայմաններ։ Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը անհրաժեշտ ամեն բան անում են՝ ամրապնդելու սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունը, պաշտպանելու ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրության պայքարը, զարգացնելու համագործակցությունը երիտասարդ անկախ պետությունների հետ, հետևողականորեն կենսագործելու սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները, մարդկությանը փրկելու համաշխարհային ջերմամիջուկային պատերազմից։ Այդ նպատակների իրագործումը լիովին համապատասխանում է հեղափոխական ու դեմոկրատական բոլոր ուժերի, բոլոր ժողովուրդների շահերին։

Սովետական Միության կոմունիստական կուսակցության միջազգային քաղաքականության նպատակն է ըստ ամենայնի ամրապնդել կապերն ու եղբայրական համագործակցությունը բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ, համախմբել համաշխարհային կոմունիստական շարժման շարքերը։ Իրենց ամբողջ պատմության ընթացքում մեր կուսակցությունը, մեր ժողովուրդը, հաշվի չառնելով դժվարությունները, միշտ էլ շատ մեծ օգնություն են ցույց տվել ազատության և ազգային անկախության գործի, հեղափոխության գործի մարտիկներին։ Միջազգային բանվոր դասակարգը գիտե, որ չի եղել որևէ հեղափոխական նշանակալի ելույթ, որը չարժանանար ՍՄԿԿ-ի և ամբողջ սովետական ժողովրդի համերաշխությանը։ ՍՄԿԿ-ն՝ Լենինի կուսակցությունը, միջազգային հեղափոխական ուժերին պաշտպանելը համարում է իր գործունեության անկապտելի մասը։

Աշխարհում բարձր պարզելով մեծ Հոկտեմբերի վառած սոցիալիզմի ջահը, սովետական ժողովուրդը, լենինյան կուսակցությունը բացեցին համաշխարհային պատմության նոր դարագլուխ։ Սոցիալիզմը, որը XIX դարում երազանքից վերածվեց գիտության, XX հարյուրամյակում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ դարձավ միլիոնավոր աշխատավոր մասսաների սոցիալ-քաղաքական պրակտիկա։



Մենք դեպի նպատակը՝ կոմունիզմի կառուցումն ենք գնում ճշմարիտ ուղիով, որը նախապատրաստվել է սովետական հասարակարգի կեսդարյա ամբողջ զարգացմամբ։

Մենք զինված ենք առաջավոր գիտական տեսությամբ՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքով, հենվում ենք հեղափոխական պայքարի և սոցիալիստական շինարարության բազմահարուստ փորձի վրա։

Մենք միասնական ինտերնացիոնալ շարքում ենք ընքանում միջազգային բանվոր դասակարգի, սոցիալիզմի եղբայրական երկրների, ազգային-ազատագրական շարժման ուժերի հետ՝ իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի, ժողովուրդների ազգային անկախության, անվտանգության և ազատության համար մղվող պայքարում։

Կոմունիզմի ուժերը անհամար են, նրա կողմն է կյանքի ճշմարտությունը, միայն կոմունիզմն է ի վիճակի լուծելու հասարակական զարգացման արմատական պրոբլեմները, մարդկությանը փրկելու ճնշումից ու շահագործումից, սովից ու աղքատությունից, միլիտարիզմից ու պատերազմներից, մեր մոլորակում հաստատելու դեմոկրատիա, խաղաղություն, ժողովուրդների բարեկամություն, մարդավայել կյանք։

Հոկտեմբերի գաղափարները, կոմունիզմի գաղափարները մեր ժամանակների առաջավոր գաղափարներն են, ժամանակակից պատմության ստեղծագործական մեծ ուժը։

Գալիք տարիները նոր հաղթանակներ կբերեն Մարքսի, Էնգելսի, Լենինի ուսմունքին, կոմունիզմի գործին։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԸՆԴԴԵՄ ԱԳՐԵՍԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ

Մեր ժամանակներում խաղաղության պահպանումը մեծ տերություններից պահանջում է մարդկության ճակատագրի հանդեպ գերագույն պատասխանատվության խոր ըմբռնում։ Հակառակ միջազգային լարվածության մեղմացման համար Սովետական Միության և բոլոր խաղաղասիրական ուժերի անդուլ ջանքերի, իրադրությունն աշխարհում շարունակվում է մնալ բարդ ու խճճված։ Միջազգային իմպերիալիզմը, Միացյալ Նահանգների գլխավորությամբ, համաշխարհային հեղափոխական պրոցեսը կանխելու մոլուցքով համակված, ժամանակ առ ժամանակ բորբոքում է լարվածության օջախները՝ աշխարհի այս կամ այն մասում հրահրելով «լոկալ» պատերազմներ, որոնք հեշտությամբ կարող են վերաճել հրթիռա-միջուկային տոտալ ընդհարման։ Պետք է ասել, որ ընթացիկ տարվա առաջին կիսամյակն այդ տեսակետից նշանավորվեց տագնապալից իրադարձություններով. մի կողմից՝ իմպերիալիստական ագրեսիայի ուժեղացումը Վիետնամում և, մյուս կողմից՝ ռազմական կոնֆլիկտը Իսրայելի և արաբական երկրների միջև աննախընթաց չափով սրեցին միջազգային իրադրությունը, լուրջ սպառնալիք ստեղծելով համընդհանուր խաղաղության համար։

### 1. ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԻՍՐԱՅԵԼԻ ԱԳՐԵՍԻԱՆ ՄԵՐՁԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

Մերձավոր Արևելքը, որը հակաիմպերիալիստական ազգային-ազատագրական պայքարի ամենաակտիվ օջախներից է, առանձնահատուկ տեղ է գրավում իմպերիալիզմի ռազմա-ստրատեգիական և տնտեսական պլաններում։ Միացյալ Նահանգները համառորեն կառչել են իրենց ստեղծած ՍԵՆՏՕ ռազմական բլոկն ամեն կերպ պահպանելու և ուժեղացնելու պլանից, փորձելով նրա շրջանակների մեջ ներքաշել Մերձավոր ու Միջին Արևելքի երկրները, անտեսելով այս խնդրում ճաշակած անհաջողությունների դասերը։ Հոգևարքային վիճակում գտնվող այդ բլոկը ամերիկյան իմպերիալիզմը դիտում է որպես միջանկյալ օղակ, որը կոչված է միմյանց շաղկապելու երկու խոշոր ռազմական բլոկները Արևմտյան Եվրոպայում և Հարավ-Արևելյան Ասիայում՝ ՆԱՏՕ-ն և ՍԵԱՏՕ-ն։ Այսպիսով, փակվում է ագրեսիվ խմբավորումների շղթան, որով նա մտադիր է օղակել սոցիալիստական երկրները։



Ամերիկյան զինվորականության և քաղաքական շրջանների պարագլուխները Մերձավոր Արևելքը ԱՄՆ-ի համար համարում են առավել կարևոր ստրատեգիական շրջանը։ Նրանց կարծիքով դա միակ շրջանն է, որտեղ Սովետական Միության սահմանները ծածկված չեն «բուֆերային պետություններով», և ամերիկյան ռազմական բազաները տեղադրվելով այդ սահմաններից ոչ-հեռու, հեշտությամբ կարող են շոշափել ՍՍՀՄ տերիտորիան։

Իմպերիալիզմի համար Մերձավոր Արևելքի ռազմա-ստրատեգիական նշանակությունը բացատրվում է նաև նրանով, որ գտնվելով Եվրոպայից Աֆրիկա և Ասիա տանող ճանապարհների հանգուցակետում, այն իր տիրապետող աշխարհագրական դիրքով հենարանի դեր կարող է խաղալ աֆրիկյան և ասիական ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները ճնշելու գործում։

Իմպերիալիզմը իր ձեռքում պահելով Մերձավոր Արևելքը, հույս ունի, մի կողմից՝ պատնեշ ստեղծել սոցիալիզմի ազդեցության դեմ, փակելով նրա ուղին դեպի Ասիայի և Աֆրիկայի երկրները, մյուս կողմից՝ միմյանցից զգալի չափով անջատել, մեկուսացնել և ջլատել ազատագրական շարժումներն այդ մայրցամաքներում, կանխելով նրանց միաձուլումը մեկ միասնական հակաիմպերիալիստական ճակատում։

Մերձավոր Արևելքում իմպերիալիզմն ունի և մեծ տնտեսական շահեր։ Մերձավոր Արևելքը համարվում է նավթի վիթխարի ռեզերվուար, իսկ դա ունի ո՛չ միայն տնտեսական, այլև ռազմական նշանակություն։ Մերձավոր և Միջին Արևելքում է գտնվում աշխարհի նավթի ընդհանուր պաշարների 60 տոկոսը։ Բացի այդ, նավթն այստեղ ունի անհամեմատ ավելի ցածր ինքնարժեք և խիստ շահութաբեր է։ Այսպես, եթե Միացյալ Նահանգներում հորատման ամեն մի մետրի դիմաց ստացվում է 9 տոննա նավթ, ապա Մերձավոր Արևելքում՝ 50 տոննա։

Այժմ Մերձավոր և Միջին Արևելքի նավթարդյունաբերության մեջ տիրապետող դիրք են գրավում ամերիկյան մոնոպոլիստները։ Արդեն 1955 թվականին նրանք իրենց ձեռքում էին պահում աշխարհի այս մասի նավթի հանույթի 58 տոկոսը, այն դեպքում, երբ Անգլիայի բաժինը կազմում էր 34 տոկոս, 1938 թվականի 77-ի դիմաց։ Մերձավոր Արևելքի արաբական երկրներում նավթի հանույթն այժմ հասնում է վիթխարի չափերի։ Այսպես, Սաուդական Արաբիան արտադրում է 119 միլիոն տոննա, Կուվեյտը՝ 114 միլիոն, Իրաքը՝ 68 միլիոն տոննա նավթ։ Արաբական երկրների տերիտորիայով են անցնում գլխավոր նավթամուղները, որոնք նավթը տեղափոխում են Միջերկրական ծովի ափը։

Նավթի մեծ մասը իմպերիալիստական պետությունները տեղափոխում են տանկերներով՝ Սուեզի ջրանցքով, որն իրավամբ կարելի է անվանել կարևոր նավթուղի։ Բավական է ասել, որ 1965 թվականին Սուեզի ջրանցքով հարավից հյուսիս անցել է 155 միլիոն տոննա բեռ, որից 127 միլիոնը՝ նավթ, մինչդեռ, հյուսիսից հարավ առաքված ընդամենը 34 միլիոն տոննա բեռից միայն 8 միլիոն տոննան է նավթամթերք եղել։

Բերված փաստերն ու թվերն ընդգծում են իմպերիալիստական տերությունների շահագրգռվածությունը Մերձավոր Արևելքի նկատմամբ։ Այսպիսով, իմպերիալիզմի համար արաբական արևելքը նաև շահույթների մեծ աղբյուր է։ Կապիտալիստական մոնոպոլիաները փաստորեն կողոպտում են արաբ ժողովրդի գլխավոր հարստությունը և, հետևաբար, ազգային-ազատա-

գրական շարժումները Մերձավոր Արևելքում մահացու սպառնալիք են իմպերիալիզմի շահերի համար աշխարհի այս մասում։ Իմպերիալիզմին առանձնակի տագնապ են պատճառում առաջադիմական ռեժիմները Սիրիայում և ԱՄՀ-ում։ Այս երկրներն ընտրելով զարգացման ոչ-կապիտալիստական ուղին և հակաիմպերիալիստական պայքարում գրավելով ավելի արմատական և հետևողական դիրք, ընթանում են արաբ ժողովրդի ազգային-ազատագրական շարժման ավանգարդում։

Արաբական ազգային-ազատագրական շարժման դեմ կռվելիս ամերիկյան և անգլիական իմպերիալիստները հենվում են ո՛չ միայն տեղական ռեակցիոն ֆեոդալական ու կիսաֆեոդալական ռեժիմների և կոմպրադորական բուրժուազիայի, այլև իսրայելական ծայրահեղականների վրա, որոնք նպատակ ունեն Իսրայելի տերիտորիան ընդլայնել հարևան արաբական պետությունների հաշվին։

Դեռևս մինչև Իսրայելի պետության կազմավորումը, այսինքն՝ մինչև ՄԱԿ-ի 1947 թվականի նոյեմբերի 29-ի որոշումը, հրեական ռեակցիոն բուրժուա-նացիոնալիստական սիոնիստական կազմակերպության ներկայացուցիչները, պահանջելով Պաղեստինում հրեական պետություն ստեղծելու իրավունք, բացեիբաց հայտարարում էին, որ իրենք հարևան քիչ բնակեցված հողատարածությունները դիտում են որպես ռեզերվ՝ այդ պետության տերիտորիան հետագայում ընդլայնելու համար։

Իսրայելի պետության ստեղծումից հետո նրա ղեկավարները բազմիցս հայտարարել են իրենց զավթողական մտադրությունների մասին։ Դեռևս 1950 թվականին Եբրայական համալսարանի ուսանողների առջև արտասանած ճառում Իսրայելի նախկին պրեմիեր-մինիստր Բեն Գուրիոնը, դիմելով իր ունկնդիրներին, պաթետիկորեն բացականչում էր. «Նվաճումների և դիվանագիտության միջոցով դուք եռանդով պետք է պայքարեք, որպեսզի ստեղծեք Իսրայելյան կայսրությունը, որն ընդգրկելու է Նեղոսի և Եփրատի միջև ընկած բոլոր երկրները»։

Ինչպես Բեն Գուրիոնը, այնպես էլ Իսրայելի ներկա ղեկավարները, որոնք այդ պետությունը համարում են Արևմուտքի անբաժան մասը, չեն թաքցնում, որ իրենց նվաճողական նպատակներին հասնելու համար հենվում են իմպերիալիզմի և, ամենից առաջ, ԱՄՆ-ի աջակցության վրա։ Այդ աջակցության համար նրանք վարձահատույց են լինում իրենց ակտիվ պայքարով արաբական ազատագրական շարժման դեմ։ Դրա լավագույն վկայությունն է Իսրայելի մասնակցությունը Անգլիայի և Ֆրանսիայի 1956 թվականի սուեզյան ավանտյուրային, առավել նոր ապացույցը՝ Իսրայելի ներկա ագրեսիան հարևան արաբական երկրների դեմ։

Իմպերիալիզմի թելադրանքով և քաջալերմամբ ձեռնարկված այդ ագրեսիան ո՛չ միայն նպատակ ուներ զավթել հարևան արաբական երկրների հողերը, այլև տապալել առաջադիմական ռեժիմները Սիրիայում և ԱՄՀ-ում, խափանել ազգային-ազատագրական շարժումը Եմենում և Արաբական թերակղզու հարավում։ Ինչ վերաբերում է ամերիկյան իմպերիալիզմին, ապա պետք է ասել, որ նա դրանով հույս ուներ համաշխարհային հասարակայնության ուշադրությունը շեղել Վիետնամի իրադարձություններից, ստեղծել մի նոր պրոբլեմ սոցիալիստական երկրների համար և դժվարացնել նրանց ռազմական օգնությունը Վիետնամին։



## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԱՐԱԲ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

Սովետական կառավարությունը, ելնելով միջազգային անվտանգության շահերից և կատարելով իր ինտերնացիոնալիստական պարտքը ագրեսիայի զոհ դարձած արաբ ժողովրդի հանդեպ, եռանդուն ջանքերի դիմեց ՄԱԿ-ի Անվտանգության խորհրդում՝ կրակն անհապաղ դադարեցնելու համար։ ՍՍՀՄ-ը ստորագրեց եղբայրական սոցիալիստական պետությունների 1967 թվականի հունիսի 9-ի հայտարարությունը, դատապարտելով Իսրայելի ագրեսիան, մյուս սոցիալիստական երկրների հետ միասին խզեց դիվանագիտական հարաբերությունները Իսրայելի հետ։ Միաժամանակ, նա պահանջեց ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի արտակարգ հատուկ նստաշրջան գումարել՝ Մերձավոր Արևելքում ստեղծված իրավիճակը քննարկելու համար։

Սովետական Միության Մինիստրների սովետի նախագահ Ա. Ն. Կոսիգինը Գլխավոր Ասամբլեայում ունեցած իր ելույթում ո՛չ միայն պահանջեց ագրեսորից իր զինված ուժերը ետ քաշել Սիրիայի, Հորդանանի և ԱՄՀ զավթած տերիտորիաներից, այլև փոխհատուցել այդ պետություններին պատճառած նյութական վնասը։ Ընկ. Կոսիգինն ընդգծելով հարցի միջազգային-քաղաքական սկզբունքային նշանակությունը, ասաց. «Եթե տերիտորիալ զավթումները ճանաչում գտնեին առանձին պետությունների կողմից, ապա դրանք սոսկ պատճառ կդառնային նոր, թերևս է՛լ ավելի խոշոր կոնֆլիկտների, իսկ Մերձավոր Արևելքի խաղաղությունն ու անվտանգությունը պատրանք կլինեին»։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումն իր որոշման մեջ լրիվին հավանություն տվեց Մերձավոր Արևելքում Իսրայելի ագրեսիայի կապակցությամբ Սովետական Միության քաղաքականությանը։

Պլենումում ընդգծվեց ամերիկյան իմպերիալիզմի կողմից Վիետնամի ժողովրդի դեմ մղվող ագրեսիվ պատերազմի և Մերձավոր Արևելքի իրադարձությունների միջև եղած կապը. այնտեղ նշվեց, որ Իսրայելի ագրեսիան ռազմատենչ իմպերիալիստական շրջանների քաղաքականության մի օղակն է. այն շրջանների, որոնք փորձում են կանգնեցնել ազգային անկախության, դեմոկրատիայի, խաղաղության և սոցիալիզմի պատմական առաջընթացը։

Մերձավոր Արևելքի իրադարձությունների նկատմամբ ՍՍՀՄ դիրքորոշումը վկայում է ՍՄԿԿ և սովետական կառավարության շրջահայաց ու խորաթափանց մոտեցումը արդի միջազգային դրության ամենաբարդ և վտանգավոր խնդիրներին։ Այդ մոտեցումն ամբողջովին տոգորված է համաշխարհային խաղաղությունը ամեն գնով փրկելու և իմպերիալիստական ագրեսիայի զոհը դարձած ժողովուրդների իրավունքները պաշտպանելու վճռականությամբ։

## 3. ԱԳՐԵՍԻԱՆ ՎԻԵՏՆԱՄՈՒՄ ՄՆՈՒՄ Է ՈՐՊԵՍ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆԸ ՍՊԱՌՆԱՑՈՂ ԱՄԵՆԱՄԵԾ ՎՏԱՆԳԸ

Հակառակ ամերիկյան իմպերիալիզմի ակնկալությունների, Մերձավոր Արևելքի իրադարձությունները չէին կարող և չշեղեցին ժողովուրդների ուշադրությունը Վիետնամից։ Իսրայելի ագրեսիան սկսվեց հենց այն ժամանակ, երբ պատերազմական էսկալացիան Վիետնամում թևակոխել էր իր զարգացման նոր փուլը։ Այդ հանգամանքն ինքնըստինքյան նոր խնդիրներ է դրել սո-

ցիալիստական երկրների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների առջև: Ուստի, պատահական չէ, որ Կարլովի Վարիի եվրոպական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնֆերանսում, որը նվիրված էր Եվրոպայի անվտանգության հարցերին, առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց Վիետնամի պրոբլեմին: Կոնֆերանսի առաջին փաստաթուղթը նրա մասնակիցների դիմումն էր, ուր աշխարհի բոլոր հակապատերազմական ուժերին, բոլոր նրանց, ում համար թանկ է խաղաղությունն ու ազատությունը, կոչ է արվում համախմբվել և լայն պայքար ծավալել ՎԴՀ ամերիկյան ռմբակոծությունները և վիետնամական ժողովրդի դեմ ուղղված այլ ագրեսիվ գործողություններն անվերապահորեն դադարեցնելու համար:

Այս կոչը պարզապես պրոլետարական համերաշխության ցույց չէր և ոչ էլ սոսկ հետևանք այն բանի, որ կոմունիստական աշխարհը խորապես մտահոգված է սոցիալիստական երկրի՝ ՎԴՀ-ի և, ընդհանրապես, իմպերիալիզմի դեմ մարտնչող ժողովուրդների ճակատագրով: Ամերիկյան ագրեսիան Վիետնամում սպառնում է միջազգային խաղաղությանը. ուստի, Եվրոպայի անվտանգության խնդիրն ինքնաբավ և մեկուսացված դրվագ չէ արդի միջազգային իրադրության բարդ ու խճճված շղթայում և, բնականաբար, Կարլովի Վարիի կոնֆերանսում այդ խնդիրը քննարկվեց սերտորեն առնչված վիետնամական հարցի հետ:

ԱՄՆ-ը միջազգային ժանդարմի գործողությունները ծավալելիս հենվում է իր ռազմա-տեխնիկական ուժի վրա, փորձում ահաբեկել ազատասեր ժողովուրդներին, ստիպել նրանց հրաժարվելու իրենց անկախության համար մղվող պայքարից, իր մարդատյաց ոտնձգությունները քողարկելով հակակոմունիզմի լոզունգներով: Վիետնամում վարած արյունալի պատերազմը ևս ամերիկյան իմպերիալիզմը ձգնում է ներկայացնել որպես «կոմունիստական ագրեսիայի» դեմ կիրառվող միջոցառում:

Վիետնամում ամերիկյան զինված ուժերի հրամանատար, գեներալ Ուեստմորլենդը ԱՄՆ-ում ունեցած ելույթում հայտարարելով, որ ինքը չի տեսնում պատերազմի հեռանկարը, այնուամենայնիվ, խոստացավ շարունակել «արյունաքամ անել» վիետնամցիներին: «Ես միայն պատերազմ մղելու մի եղանակ գիտեմ,— հայտարարեց նա,— առավելագույն ճնշում գործադրել առավելագույն ժամանակի ընթացքում»:

Վիետնամական պատերազմի քաղաքական ասպեկտները քննարկելիս չի կարելի անտեսել այն արտաքին գործոնները, որոնք ամերիկյան ռազմատենչ իմպերիալիզմին ոգեշնչում են ուժեղացնելու ագրեսիան:

Անտարակույս, ագրեսիայի խորացմանը նպաստում է չինական դիրքը, և չինական ղեկավարների հրահրած տարաձայնությունները սոցիալիստական լագերի ներսում ու համաշխարհային կոմունիստական շարժման մեջ: Չինական ղեկավարությունը համառորեն և հետևողականորեն հրաժարվում է Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների հետ համատեղ համաձայնեցված քաղաքականություն մշակել Վիետնամի խնդրում: Դա խիստ դժվարացնում է սոցիալիստական երկրների օգնությունը Վիետնամին, բարդացնում նրա վիճակը և նպաստում թշնամուն: Չինաստանի վիթխարի տերիտորիայով անջատված լինելով ՍՍՀՄ-ից և մյուս սոցիալիստական երկրներից, Վիետնամը մնում է զգալիորեն մեկուսացած նեղ հողաշերտ, որի դեմ է ուղղել ամերիկյան իմպերիալիզմն իր ռազմական հզորությունը:

Խաղաղ օվկիանոսի ավազանում ամերիկյան զինված ուժերի հրամանա-



տար, ծովակալ Շարպն այն միտքն է հայտնում, որ Չինաստանն աշխատում է ամեն կերպ խուսափել Վիետնամական կոնֆլիկտին մասնակցելուց:

Իրականում չինական ղեկավարության դիրքն ամերիկյան իմպերիալիզմին հնարավորություն է ընձեռում միջազգային ժանդարմի դերը իրագործելիս օգտագործել համաշխարհային կոմունիստական շարժման ներսում եղած տարաձայնությունները:

Չինական պառակտիչներն իրենց հակասովետական ոտնձգություններն է՛լ ավելի ուժեղացրին Մերձավոր Արևելքի իրադարձությունների կապակցությամբ: Ինչպես ասված է ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշման մեջ, Մաո Ցզեդունի խմբի շպարտչական կամպանիայի և պառակտողական գործողությունների նպատակն է ջլատել հակաիմպերիալիստական ուժերը և անվստահություն սերմանել արաբական երկրների ժողովուրդների ու սոցիալիստական երկրների ժողովուրդների միջև:

## 4. ՎԻԵՏՆԱՄԸ ԵՎ ԵՎՐՈՊԱՅԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Ինչպես Վիետնամի հարցը, այնպես էլ միջազգային իրադրության մյուս պրոբլեմները սերտորեն կապված են համաշխարհային կոմունիստական շարժման արդի իրավիճակի ու խնդիրների և, ամենից առաջ, նրա միասնության խնդրի հետ: Ահա թե ինչու Կարլովի Վարիի կոնֆերանսում հայտարարվեց, որ նրա խնդիրն է՝ վճռաբար նպաստել ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության մերկացմանն ու պարտությանը, որ Վիետնամից դուրս բերվեն բոլոր օտարերկրյա զորքերը և վիետնամական ժողովրդին իրավունք ընձեռվի կարգավորելու իր ներքին գործերը: Կոնֆերանսում նշվեց, որ Եվրոպայում և աշխարհի բոլոր երկրներում՝ ներառյալ նաև Միացյալ Նահանգները, ընդլայնվում են Վիետնամին օգնելու շարժումը և բողոքը ԱՄՆ-ի ագրեսիայի դեմ: Աճում է սոցիալիստական երկրների կողմից վիետնամական ժողովրդին ցույց տրվող քաղաքական, տնտեսական և ռազմական աջակցությունը: Եվրոպայի 24 կոմունիստական և բանվորական կուսակցությունների ներկայացուցիչներն ի լուր աշխարհի հայտնեցին, որ իրենք լի են վճռականությամբ ավելի մեծ օգնություն ցույց տալու Վիետնամի հերոսական ժողովրդին:

Սակայն, դրանով չի սահմանափակվում Կարլովի Վարիի կոնֆերանսի նշանակությունը Վիետնամի քաջարի ժողովրդի անձնուրաց պայքարի հաջողության համար: Այդ նշանակում է և այն, որ Եվրոպայի անվտանգության հարցը չի կարելի անջատել Վիետնամի խնդրից և Հարավ-Արևելյան Ասիայի ընդհանուր իրադրությունից: Կոնֆերանսի գլխավոր փաստաթղթում՝ «Հանուն Եվրոպայի խաղաղության ու անվտանգության» հայտարարության մեջ ասված է, որ Միացյալ Նահանգները՝ ագրեսիայի և ռեակցիայի գլխավոր ուժը, փորձում են ետ շրջել պատմության անիվը և ջնջել ժողովուրդների իրավունքը՝ ինքնուրույն տնօրինելու իրենց ճակատագիրը: Նրանք կոպիտ միջամտում են Լատինական Ամերիկայի, Ասիայի ու Աֆրիկայի երկրների ներքին գործերին, ընդլայնում բարբարոսական ագրեսիվ պատերազմը Վիետնամի ժողովրդի դեմ, պատերազմ, որն այսօր ամենալուրջ սպառնալիքն է ամբողջ աշխարհի խաղաղությանը:

Այս իրադրության մեջ ավելի մեծ նշանակություն է ստանում Եվրոպայի անվտանգության հարցը: Վերջին հաշվով, իմպերիալիզմի և սոցիալիստական

համագործակցության գլխավոր ուժերը կանգնած են դեմ հանդիման հենց Եվրոպայում։ Այստեղ է գտնվում այն ուժը՝ արևմտագերմանական միլիտարիզմը և ռևանշիզմը, որի հետ իմպերիալիզմը կապել է մեծ հույսեր՝ ցանկանալով դրանից մի նոր հարվածող բռունցք ստեղծել սոցիալիստական աշխարհի դեմ։ Եվրոպան այժմ ԱՄՆ-ի ստեղծած գլխավոր ագրեսիվ բլոկի՝ ՆԱՏՕ-ի հանդրվանն է, իսկ այն ուղղված է ո՛չ միայն սոցիալիստական երկրների, այլև ընդհանրապես ազգային ու սոցիալական առաջադիմության դեմ։ ՆԱՏՕ-ն Եվրոպայի կապիտալիստական տերությունների դեմոկրատական ուժերի ու շարժումների դեմ իմպերիալիզմի մղած պայքարի նեցուկն է, որի առավել նոր ապացույցը ռազմա-ֆաշիստական հեղաշրջումն է Հունաստանում։ ՆԱՏՕ-ն վճռական դեր է խաղում, որպես իմպերիալիստական տերությունների ուժերի կոորդինացման միջոց, ազգային ազատագրության շարժումների դեմ կռվելու համար։

ՆԱՏՕ-ն Եվրոպան պառակտել է երկու հակադիր ռազմա-քաղաքական բլոկների։ Վերազինելով ԳՖՀ-ն, ընդգրկելով այն ՆԱՏՕ-ի սիստեմում և պաշտպանելով նրա՝ ողջ Գերմանիան ներկայացնելու անօրինական հավակնությունը, իմպերիալիստները Եվրոպայի կենտրոնում ստեղծել են լարվածության օջախ, որից կարող է համաշխարհային հրդեհ բռնկել։

Ինչպես Եվրոպայում, այնպես էլ աշխարհի այլ մասերում ԱՄՆ-ն իր աշխարհակալական նկրտումները ջանում է արդարացնել երևութական «կոմունիստական ագրեսիայի» դեմ կռվելու առասպելով։ Հետևաբար, այդ առասպելը Եվրոպայում հողմացրիվ անելն, ըստ էության, մահացու հարված կլիներ ԱՄՆ-ի ողջ արտաքին-քաղաքական ստրատեգիային։ Եվրոպական երկրների ուժերով մայր ցամաքի անվտանգության ապահովումը կնշանակեր ո՛չ միայն Միացյալ Նահանգների ագրեսիվ պլանների ձախողումը Եվրոպայում, այլև նրա արտաքին-քաղաքական ողջ կոնցեպցիայի կրախը։

Ամերիկյան հայտնի տնտեսագետ Գելբրեյտը գտնում է, որ 20 տարի շարունակ ԱՄՆ-ը առաջնորդի դեր է խաղացել Եվրոպայում՝ հենվելով «սառը պատերազմի» վրա և ահաբեկելով սովետական ռազմական սպառնալիքի մասին խոսակցությամբ։ «Այժմ դրան այլևս ոչ ոք չի հավատում,— գրում է Գելբրեյտը,— Պենտագոնը կորցրել է իր լավագույն դաշնակցին Եվրոպայում՝ «սարսափը»»։

Ինչպես ասված է Կարլովի Վարիի Հայտարարության մեջ, իմպերիալիզմի ագրեսիվ կուրսը ձախողվել է սոցիալիստական երկրների ակտիվ արտաքին քաղաքականության շնորհիվ։ Այդ կուրսի ձախողումը արդյունք է նաև այն բանի, որ սոցիալիստական երկրները հետևողականորեն վարում են տարբեր հասարակական սիստեմ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության քաղաքականություն, որը մեծ թափ ստացավ հատկապես ՍՄԿԿ XX համագումարից հետո։ Իմպերիալիզմի ագրեսիվ կուրսը ձախողվել է նաև կոմունիստական և բանվորական կուսակցությունների պայքարով, ժողովրդական զանգվածների գործողություններով, արևմտաեվրոպական հասարակայնության լայն շրջանների ակտիվությամբ։

Ինչպես ասված է Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների Հայտարարության մեջ, «Ատլանտյան բլոկը թևակոխել է բացահայտ ճգնաժամի փուլը»։ Խնդիրն այն է, որ հակակրանքը Ատլանտյան դաշինքի հանդեպ սկսում է ներթափանցել նաև արևմտաեվրոպական տերությունների պաշտոնական շրջանները։



Կարլովի Վարիի կոնֆերանսում որոշվեց անել ամեն ինչ, որպեսզի մայր ցամաքի բոլոր խաղաղասեր ուժերը լայն պայքար ծավալեն ՆԱՏՕ-ի գործողության ժամկետը երկարացնելու կամ այդ ագրեսիվ դաշինքը ձևափոխելու փորձերի դեմ։ Դրան մեծապես օժանդակում է Վարշավայի պակտի երկրների դիրքը, որոնք բազմիցս հայտնել և Բուխարեստի դեկլարացիայում նորից հաստատել են Եվրոպայում երկու հակադիր ռազմական դաշինքները լուծարքի ենթարկելու իրենց պատրաստակամությունը։

Ներեվրոպական քաղաքական հարցերը վճռելու նպատակով, ամենից առաջ, պետք է հրավիրել եվրոպական պետությունների կոնֆերանս՝ Եվրոպայի անվտանգության և խաղաղ համագործակցության հարցի շուրջը։ Եվրոպայի կոմունիստական և բանվորական կուսակցությունների կոնֆերանսը լիովին պաշտպանեց այդպիսի, ինչպես նաև եվրոպական բոլոր պառլամենտների ներկայացուցիչների կոնֆերանս հրավիրելու առաջարկը։ Այնտեղ շարադրվեցին այն կարևոր միջոցառումները, որոնք անհրաժեշտ են Եվրոպայում անվտանգությունն ապահովելու համար։

Միացյալ Նահանգները համառորեն աշխատում են Վիետնամի կոնֆլիկտի մեջ ուղղակիորեն ներքաշել իրենց եվրոպական դաշնակիցներին, թեև առայժմ ապարդյուն։ Հետևաբար Եվրոպայում լարվածության ուժեղացումը կհամախմբի ՆԱՏՕ-ին, թույլ կտա ամերիկացիներին վերադարձնել արդեն կորցրած դիրքերը և արևմտաեվրոպական տերություններին ուժգնորեն կնետի Միացյալ Նահանգների գիրկը։ Դրանով անհամեմատ կմեծանան ԱՄՆ-ի՝ իր եվրոպական դաշնակիցներին ռազմական կոնֆլիկտների և, ամենից առաջ, վիետնամական պատերազմի մեջ ներքաշելու հնարավորությունները։

Եվրոպայի անվտանգության խնդրի իրագործումը և նորմալ հարաբերությունների ստեղծումը Եվրոպական մայր ցամաքի՝ Արևելքի և Արևմուտքի միջև միայն կուժեղացնի Միացյալ Նահանգների միջազգային մեկուսացումը, կթուլացնի նրա ռազմա-քաղաքական և ստրատեգիական դիրքերը ու կնպաստի Վիետնամի ժողովրդի արդար գործի հաղթանակին։

Ամերիկյան ագրեսիան Վիետնամում և իրադարձությունները Մերձավոր Արևելքում՝ միևնույն իմպերիալիստական քաղաքականության երկու արտահայտություններն են։ Իմպերիալիզմի պլանների պարբերական ձախողումները նրան մղում են նորանոր վտանգավոր ավանտյուրաների։ Այդ պատճառով Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմի վերջին պլենումում համոզմունք հայտնվեց, որ խաղաղության, դեմոկրատիայի, սոցիալիզմի և ազգային-ազատագրական ուժերի համատեղ ջանքերը կարող են սանձահարել ագրեսիան և կանխել համաշխարհային նոր պատերազմը։

Ս. ԲԱԴԱԼՅԱՆ

Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

*Մեր երկիրը բոլորում է պատմական իրադարձություններով հարուստ իր նոր կյանքի կես դարը։ Սովետական ժողովրդի ստեղծագործական աշխատանքի ու պայքարի անցած ճանապարհը նշանավորվում է ՍՍՀՄ-ի սոցիալ-տնտեսական կյանքում տեղի ունեցած արմատական վերափոխումներով, որոնց սկիզբը դրվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով։ Դրա մեծագույն արդյունքներից մեկը՝ մեր երկրում կոլտնտեսային կարգի ստեղծումն է։ Հոկտեմբերի 50-տարին գյուղի կոոպերացման լենինյան պլանի իրագործումն է, սոցիալիստական գյուղատնտեսական խոշոր արտադրության կազմակերպումը։*

***

Գյուղի դարավոր հետամնացությունն ու խավարը, գյուղացիության շահագործման ֆեոդալա-ճորտատիրական ձևերը, սակավահողությունը, հողամշակման պրիմիտիվ արտադրամիջոցները, բերքատվության խղճուկ մակարդակը, հարկադրանքն ու բռնությունը, կարիքն ու զրկանքը, ահա նախասովետական գյուղի բնորոշ գծերը։ Նախահեղափոխական Ռուսաստանը, չնայած կապիտալիզմի զարգացման հարաբերականորեն արագ տեմպերին, տնտեսական տեսակետից մնում էր հետամնաց երկիր։ Նրա էկոնոմիկայի բնորոշ առանձնահատկությունն այն էր, որ այն գլխավոր կապիտալիստական երկրներից ետ էր մնում ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության զարգացման մակարդակով։ Գյուղատնտեսության զարգացման բնույթը, նրա հետամնացությունը որոշվում էր կալվածատիրական հողատիրությամբ, կիսանատուրալ մանր ու փոշիացած միլիոնավոր գյուղացիական տնտեսությունների առկայությամբ և ֆեոդալա-ճորտատիրական մնացուկներով։ Այդ ամենն իրենց կնիքն էին դնում երկրի քաղաքական ու տնտեսական կյանքի զարգացման բոլոր կողմերի վրա, արգելակում էին նրա արտադրաուժերի աճը։

Գյուղատնտեսության հետամնացությունն հետևանք էր ոչ միայն այն հանգամանքի, որ նախահեղափոխական Ռուսաստանում կային 15—16 միլիոն մանր գյուղացիական տնտեսություններ, որոնք արտադրությունը վարում էին պրիմիտիվ գործիքներով, այլև այն, որ գյուղացիությունը տառապում էր ցարիզմի, կալվածատերերի և բուրժուազիայի բիրտ կամայականությունից,



բռնությունից ու ճնշումից։ Վ. Ի. Լենինը, բնութագրելով նախահեղափոխական ժամանակաշրջանում գյուղացիության մոռացված, տրորված ու խավարի ծանր վիճակը, գրում էր. «Աշխարհում և ոչ մի երկրի գյուղացիությունը... չի տեսել այնպիսի քայքայում, այնպիսի աղքատություն, այնպիսի նվաստացում ու ծանակում, ինչպես Ռուսաստանում» (Երկեր, հ. 17, էջ 88)։

Ցարիզմի պայմաններում փոքր հողակտորի վրա չքավոր գյուղացու ծանր և ուժից վեր աշխատանքը հազիվ էր ապահովում նրա ընտանիքի կիսաքաղց կյանքը։ Ինչքան էլ հարուստ ու բերքառատ լիներ հողը, նրա պտուղները ստանում էին ո՛չ թե անմիջական արտադրողները, այլ շահագործողները։ Բավական է ասել, որ նախահեղափոխական Ռուսաստանում շահագործող դասակարգերը՝ կալվածատերերը, քաղաքային ու գյուղական բուրժուազիան յուրացնում էին գյուղացիների եկամուտների ավելի քան մեկ քառորդը։ Նրանք իրենց ձեռքում կենտրոնացնում էին երկրի հողային տարածությունների մեծ ու լավագույն մասը։ Գյուղում կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը զուգընթաց ավելի ու ավելի մեծ չափով էր հողն անցնում ցարական արքունիքի, կալվածատերերի, քաղաքային բուրժուազիայի և կուլակության ձեռքը։ Նախահեղափոխական Ռուսաստանի գյուղատնտեսության հետամնացության և աշխատավոր գյուղացիության շահագործման միջնադարյան ձևերի հիմնական պատճառներից մեկը, հողի, որպես գյուղատնտեսության գլխավոր արտադրամիջոցի, բաշխման անարդարացի հարաբերություններն էին։ Այդ ակնառու կերպով երևում է հետևյալ տվյալներից[1]։

| Հողասեփականատերերի խմբերը | Սեփականատերերի թիվը (միլիոն) | Նրանց հողերի չափը (միլիոն հեկտար) | Տիրության միջին չափը՝ (հեկտար) |
|---|---|---|---|
| Խոշոր հողատերեր . . . | 0,03 | 152 | 5066 |
| Կուլակներ . . . . . | 2,4 | 80 | 33,4 |
| Միջակ ու չքավոր գյուղացիներ . . . . . | 13,6 | 135 | 9,9 |

[1] («Вопросы экономики», 1957, № 5, стр. 10).

Թվերը ցույց են տալիս, որ մի քանի տասնյակ հազար խոշոր հողատերեր տիրում էին 152 միլիոն հեկտար հողերի, իսկ կուլակների հետ միասին՝ 232 միլիոն հեկտարի, այդ այն ժամանակ, երբ 13,6 միլիոն միջակ ու չքավոր գյուղացիական տնտեսությունները, որոնք կազմում էին ամբողջ գյուղացիական տնտեսությունների 85 տոկոսը, ընդամենն ունեին 135 միլիոն հեկտար հող։ Ընդ որում բնակչության չքավոր մասի յուրաքանչյուր տնտեսությանն ընկնում էր ընդամենը 1—2 հեկտար, իսկ շատ դեպքերում էլ դրանից ավելի քիչ հող։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական ամբողջ բազան կազմված էր 7,8 միլիոն արորից, 6,4 միլիոն գութանից, 17,7 միլիոն փայտե տափանից։ Գյուղացիական տնտեսությունների մեկ քառորդը ձիազուրկ էր, 34 տոկոսը չուներ գույք։ XX դարի սկզբին Ռուսաստանում կային 10 միլիոն չքավոր գյուղացիական տնտեսություններ, որոնք գտնվում էին աննկարագրելի աղքատության ու կարիքի մեջ։

Նախահեղափոխական Ռուսաստանի աշխատավոր գյուղացիությունը ո՛չ միայն տնտեսական ծանր պայմաններում էր, այլև հետամնաց էր ու անկուլտուրական։

Բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշխանության նվաճումից հե-
տո ամենադժվարին ու բարդ խնդիրը տասնյակ միլիոնավոր անհատական ու
մանր գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերափոխումն էր։
Կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով Վ. Ի. Լենինի մշակած
կոոպերատիվ պլանով, հաստատակամորեն իրագործեց աշխատավոր գյուղա-
ցիության կյանքի ու կենցաղի առավել խոր հիմքերին վերաբերող այդ ար-
մատական խնդիրը, որով վերացվեց շահագործողների ամենաբազմամարդ
դասակարգը՝ կուլակությունը։ «Սովետական գյուղի անցումը խոշոր սոցիա-
լիստական տնտեսության,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— մեծ հեղափոխու-
թյուն էր տնտեսական հարաբերությունների մեջ, գյուղացիության կյանքի
ամբողջ կացութաձևի մեջ։ Կոլեկտիվացումը գյուղը ընդմիշտ փրկեց կուլա-
կային ստրկացումից, դասակարգային շերտավորումից, քայքայումից և աղ-
քատացումից։ Լենինյան կոոպերատիվ պլանի հիման վրա գյուղացիական դա-
րավոր հարցը գտավ իր իսկական լուծումը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյու-
թերը, էջ 433)։

Ջեռնամուխ լինելով գյուղատնտեսության կոոպերացման լենինյան պլանի
իրականացմանը, կուսակցությունը ելնում էր սոցիալիզմի կառուցման և աշ-
խատավոր գյուղացիության կենսական շահերից։

Կուսակցությունը գյուղացիներին համոզեց, որ ապրել հին եղանակով չի
կարելի, որ գյուղը տրորված ու խավարի վիճակից դուրս բերելու, կուլակային
շահագործումից ազատագրելու, գյուղատնտեսության արտադրուժերը զար-
գացնելու և գյուղացիական մասսաների կյանքի պայմաններն արմատապես
բարելավելու միակ ճիշտ ուղին՝ գյուղում խոշոր սոցիալիստական արտադրու-
թյան հաստատումն է։ Սոցիալիզմի կառուցման այդ ամենադժվարին խնդրի
լուծումը պահանջեց վիթխարի ջանքեր։ Կոլտնտեսային կարգն ստեղծվեց դա-
սակարգային սուր պայքարի պայմաններում։ Մեր երկրի աշխատավոր գյուղա-
ցիությունը, լենինյան կուսակցության ղեկավարությամբ ու բանվոր դասա-
կարգի օգնությամբ, պատմության մեջ առաջին անգամ ընթացավ մի նոր
ուղիով, որով չէր անցել գյուղացիությունը և ո՛չ մի երկրում։ Հարկ եղավ լե-
նինյան կոոպերատիվ պլանի նախագծումներն իրագործել տրոցկիստների, աջ
օպորտունիստների և լենինիզմի թշնամի այլ խմբերի դեմ մղած համառ
պայքարով։

Կոլտնտեսային կարգի, որպես գյուղում սոցիալիստական արտադրական
հարաբերությունների հաստատման ձևի, նախադրյալների աստիճանական
ստեղծումը սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության
հաղթանակի առաջին օրերից։ Բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշ-
խանության նվաճումը և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը հան-
դիսացավ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման վճռական
պայմանը։ Կապիտալի անկումը միայն,— ընդգծում էր Մարքսը,— կարող է
գյուղացուն բարձրացնել, միայն հակակապիտալիստական, պրոլետարական
կառավարությունը կարող է նրա տնտեսական աղքատությանը և հասարակա-
կան դեգրադացիային վերջ տալ» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր,
հատ. I, էջ 243, Հայպետհրատ, 1950)։

Սովետական Միության փորձն ապացուցեց, որ միայն սոցիալիստական
հեղափոխության հաղթանակով և պրոլետարիատի դիկտատուրայի հաստատ-
մամբ են ստեղծվում ինչպես քաղաքական, այնպես էլ տնտեսական նախա-



դրյալներ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման, գյուղացիա-
կան մասսաներին քաղաքական իրավազրկությունից, ճնշումից ու շահագոր-
ծումից ազատագրելու համար։ «Միայն Հոկտեմբերյան հեղաշրջումը, միայն
բանվոր դասակարգի հաղթությունը քաղաքներում, միայն սովետական իշխա-
նությունն իրականում հնարավորություն տվեց,— ասում էր Վ. Ի. Լենինը,—
ծայրից ծայր մաքրելու ամբողջ Ռուսաստանը, մաքրելու հին ճորտատիրական
ժառանգության խոցից, հին ճորտատիրական շահագործումից, կալվածատի-
րական հողատիրությունից և կալվածատերերի ճնշումից՝ ամբողջ գյուղացիու-
թյան վրա, բոլոր գյուղացիների վրա անխտիր» (Երկեր, հատ. 28, էջ 433)։
Հոկտեմբերյան հեղափոխությունից աշխատավոր գյուղացիությունը ստացավ
իր նյութական ու կուլտուրական դրությունն արմատապես բարելավելու հնա-
րավորություն։ Հոկտեմբերի 26-ին (նոյեմբերի 8-ին) սովետների համառու-
սական երկրորդ համագումարը Լենինի առաջարկությամբ դեկրետ ընդունեց
հողի մասնավոր սեփականության իրավունքի վերացման և այն համաժո-
ղովրդական սեփականություն համարելու մասին։ Այդ դեկրետով աշխատա-
վոր գյուղացիությունն անվճար ստացավ ավելի քան 150 միլիոն հեկտար հող։
Բացի դրանից, գյուղացիությունն ազատվեց կալվածատերերին վարձավճար
տալուց, ինչպես նաև հողի գնման ծախքերից՝ տարեկան 700 միլիոն ոսկի
ռուբլի գումարով, գյուղացիական հողային բանկին վճարելիք 1.300 միլիոն
ռուբլի պարտքից։

Գնահատելով աշխատավոր գյուղացիության համար Հոկտեմբերյան հե-
ղափոխության նշանակությունը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Գյուղացիական երկ-
րում պրոլետարիատի դիկտատուրայից առաջինը շահեցին, ամենից շատ շա-
հեցին, միանգամից շահեցին առհասարակ գյուղացիները... Պրոլետարիատի
դիկտատուրայի օրով առաջին անգամ գյուղացին աշխատեց իր համար և
սնվեց ավելի լավ, քան քաղաքացին։ Առաջին անգամ գյուղացին տեսավ իսկա-
կան ազատություն, իր հացն ուտելու ազատություն, ազատություն սովից»
(Երկեր, հատ. 30, էջ 121—122)։

Հողի ազգայնացումով մեր երկրում սկսվեց արտադրամիջոցների մաս-
նավոր սեփականության վերացման և համաժողովրդական սեփականության
հաստատման պատմական պրոցեսը։ Այն մի կարևոր քայլ էր գյուղում կա-
պիտալիստական հարաբերությունների վերացման և սոցիալիստականի զար-
գացման համար։ Հողային սեփականության նոր ձևի հաստատումը հուժկու
հարված հասցրեց մասնավոր սեփականության սկզբունքին, կարևոր նշանա-
կություն ունեցավ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման, բան-
վոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման գործում։ Գյու-
ղացիությունը, սովետական պետությունից ստանալով հող, աստիճանաբար
կանգնեց սոցիալիզմի անցման ուղու վրա։

Հողը սովետական պետության ձեռքում հանդիսացավ մի հզոր միջոց
գյուղում կապիտալիստական տարրերի սահմանափակման ու դուրս մղման
քաղաքականության իրագործման, գյուղում կապիտալիզմի տնտեսական
դիրքերի թուլացման համար։ Հողի ազգայնացմամբ արմատապես փոխվեց
գյուղի դասակարգային շերտավորման պատկերը։ Եթե նախահեղափոխական
գյուղում չքավորները կազմում էին գյուղացիության 65 տոկոսը, միջակ-
ները՝ 20, իսկ կուլակները՝ 15 տոկոսը, ապա 1928/29 թվականին համապա-
տասխանաբար՝ 35, 60 և 4—5 տոկոսը։ Սովետական իշխանության պայման-

ներում չքավոր գյուղացիությունը ստանալով բազմակողմանի օգնություն և ազատվելով ծանր հարկերից, իր զգալի մասով բարձրացավ միջակների մակարդակին։ Կուլակային տնտեսությունների տեսակարար կշիռը նվազեց ավելի քան երեք անգամ։ Չքավոր գյուղացիությունը 1925—1927 թվականներին պետությունից ստացավ 191 միլիոն ռուբլի դրամական օգնություն։ Այդ ամենը հեշտացրեց գյուղացիության հետագա անցումը խոշոր սոցիալիստական տնտեսության ռելսերի վրա։ Իհարկե, հողի ազգայնացումը դեռևս չէր նշանակում, որ գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման համար ստեղծվել էին անհրաժեշտ բոլոր պայմանները։ Գյուղում տնտեսության նոր, սոցիալիստական ձևերի անցման համար պետք է ստեղծվեին նաև տնտեսական այլ նախադրյալներ։

Կոլտնտեսային կարգի ստեղծման, ամրապնդման ու զարգացման, գյուղում սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման գլխավոր ու վճռական պայմանը երկրի սոցիալիստական ինդուստրացումն էր։ Սոցիալիզմը կարելի էր կառուցել խոշոր մեքենայական արտադրության բազայի վրա միայն։ «Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը,— նշում է Վ. Ի. Լենինը,— որն ընդունակ է վերակառուցելու նաև հողագործությունը» (Երկեր, հատ. 32, էջ 591)։

Իրագործելով երկրի ինդուստրացման քաղաքականությունը, կուսակցությունը ելնում էր նրանից, որ միայն այդ ուղիով հնարավոր կլինի ամենից հետամնաց գյուղատնտեսական արտադրությունը դնել նոր հիմքերի վրա, այն դարձնել գիտության ու տեխնիկայի նվաճումների վրա խարսխված արտադրություն։ Երկրի ինդուստրացումն օբյեկտիվորեն պայմանավորեց գյուղատնտեսական արտադրության վերափոխման, գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական հանրայնացման տնտեսական անհրաժեշտությունը և դրա նյութական հնարավորությունը։ Ինդուստրացման շնորհիվ գյուղն ստացավ հզոր արտադրաուժեր, աճեց գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։

Այդ պրոցեսն արտացոլվում է հետևյալ աղյուսակում.

| | 1928 թ. | 1932 թ. | 1940 թ. | 1958 թ. | 1964 թ. | 1965 թ. |
|---|---|---|---|---|---|---|
| Տրակտորներ ֆիզիկական միավոր (հազար հատ) . | 27 | 148 | 531 | 1001 | 1539 | 1650 |
| Հացահատիկի կոմբայն ֆիզիկական միավորներով (հազար հատ) . . . . . . . . . . . . . | — | 14 | 182 | 502 | 513 | 520 |
| Բեռնատար ավտոմոբիլներ ներառյալ ավտոցիստեռները (հազար հատ) . . . . . . . . . . . | 0,7 | 14 | 228 | 700 | 554 | 582 |
| Գյուղատնտեսության մեջ էլեկտրաէներգիայի սպառումը (մլն. կիլովատ ժամ) . . . . . . . . | 35 | 86 | 538 | 6907 | 18410 | 21000 |

Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի շնորհիվ պայմաններ ստեղծվեցին վերացնելու արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման տնտեսական հիմքերի միջև եղած հակասությունը, որը կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայի հակասություններից մեկն էր։ Այդ հակասությունը դրսևորվում էր նրանում, որ արդյունաբերության մեջ հաստատվել էր արտադրամիջոցների հասարակական սեփականություն, ստեղծվել էին սոցիալիստական արտադրահարաբերություններ, այն զարգանում էր ընդլայնված վերարտադրությամբ։ Մինչդեռ գյուղատնտեսությունը մանր ու մասնավոր տնտեսությունների վրա էր հիմնված, որը ո՛չ միայն չէր զարգանում ընդլայնված վերարտադրությամբ, այլև որոշ հող էր հանդիսանում կապիտալիստական հարաբերությունների առաջացման համար։



Հասկանալի է, որ արտադրության սոցիալիստական եղանակը չէր կարող հաջողությամբ զարգանալ երկու տարբեր տնտեսական հիմքերի վրա։ Այդ հակասությունը հաղթահարվեց մանր, անհատական գյուղացիական տնտեսությունները սոցիալիստական խոշոր տնտեսությունների ուղու վրա փոխադրելու միջոցով։ Դրա շնորհիվ ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ հաստատվեց միասնական տնտեսական հիմք։ Արտադրամիջոցների հասարակական սեփականության և սոցիալիստական արտադրահարաբերությունների ընդհանուր հիմքի վրա արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը միավորվեցին մի ամբողջական տնտեսական օրգանիզմի մեջ։ «Ով—ում»-ի հարցը գյուղատնտեսության մեջ ևս լուծվեց հօգուտ սոցիալիզմի։ Արդյունաբերության և գյուղատնտեսության, քաղաքի ու գյուղի միջև ստեղծվեցին նոր, սոցիալիստական հարաբերություններ, վերացավ դրանց միջև դարավոր հակադրությունը։ Սոցիալական այդ պրոբլեմի լուծումը կոլտնտեսային կարգի հաղթանակի մեծագույն արդյունքն էր։

Կոլտնտեսային կարգի հաղթանակի գործում կարևոր դեր խաղացին սովետական իշխանության առաջին տարիներին կազմակերպված սովխոզներն ու արտադրական գյուղատնտեսական կոլեկտիվները, որոնք դեռևս սոցիալիստական առաջին օջախներն էին գյուղում։ Դրանց օրինակով գյուղացիները համոզվում էին, որ մանր անհատական տնտեսությունների համեմատ խոշոր սոցիալիստական տնտեսությունները մեծ առավելություն ունեն։ Վ. Ի. Լենինն ասում էր, որ սովխոզներն ու կոլտնտեսությունները, «...պետք է զարգանան այն ուղղությամբ, որ նրանց հետ շփվելիս գյուղացիական տնտեսության պայմաններն սկսեն փոխվել՝ տնտեսական օգնություն գտնելով, և որ ամեն մի կոմունա, արտել կամ ընկերություն կարողանա այդ պայմանների լավացման սկիզբը դնել և գործնականորեն իրականացնել այն, գյուղացիներին գործով ապացուցելով, որ այդ փոփոխությունը նրանց միայն օգուտ է բերում» (Երկեր, հատ. 30, էջ 242)։

Գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման, գյուղում արտադրաուժերի զարգացման և սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում մեծ դեր կատարեցին ՄՏԿ-ները։ Դրանք հանդիսանում էին (պատմական որոշ ժամանակաշրջանում) կոլտնտեսությունների արտադրատեխնիկական սպասարկման ձևերը, այն հզոր լծակներն ու քաղաքական և արտադրական ուժը, որոնց օգնությամբ կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը գյուղում ապահովեցին սոցիալիստական արտադրահարաբերությունների ամրապնդումը, ստեղծեցին հանրային աշխատանքի կազմակերպման նոր ձևեր։ ՄՏԿ-ները գյուղացիությանը ցույց էին տալիս նոր տեխնիկայի դերն ու նշանակությունը կոլտնտեսային արտադրության զարգացման, նրա արտադրողականության բարձրացման գործում։ Գյուղացիները փորձով համոզվում էին խոշոր մեքենայացված կոլեկտիվ տնտեսությունների առավելությունների մեջ։

Կոլտնտեսային կարգի ստեղծման նախապատրաստումն ու իրագործումն ընթանում էր դասակարգային սուր պայքարի պայմաններում։ Կուլակությունը և նրա գործակալները կոլտնտեսային շարժմանը ցույց էին տալիս կատաղի դիմադրություն։ Վ. Ի. Լենինը, ելնելով մեր երկրի պատմական զարգացման

կոնկրետ պայմաններից և որոշելով կուլակության նկատմամբ բանվոր դասակարգի վերաբերմունքը, հանգեց այն եզրակացության, որ սկզբում անհրաժեշտ է ճնշել կուլակության դիմադրությունը և հակասովետական գործողությունները, ապա նրա նկատմամբ կիրառել սահմանափակման ու արտամղման, իսկ այնուհետև (նյութական տեխնիկական ու սոցիալ-տնտեսական որոշակի պայմանների դեպքում) անցնել կուլակության որպես դասակարգի վերացման քաղաքականության իրագործմանը:

ՌԿ(բ)Կ VIII համագումարում Վ. Ի. Լենինը անդրադառնալով Էնգելսի այն ենթադրությանը, որ հաղթանակած պրոլետարիատին, թերևս կհաջողվի կուլակության հանդեպ չգործադրել ռեպրեսիաներ և ճնշման միջոցներ, ասում էր. «Ռուսաստանում այդ ենթադրությունը չարդարացավ. մենք կուլակների հետ ուղղակի քաղաքացիական պատերազմի մեջ ենք եղել, կանք ու կլինենք» (Երկեր, հատ. 29, էջ 182): Կուլակության դեմ նման քաղաքականությունը բխում էր մեր երկրի զարգացման կոնկրետ պայմաններից: Եվ դա միակ ճիշտ քաղաքականությունն էր: Կուլակության դիրքն ինչպես Հոկտեմբերյան հեղափոխության, այնպես էլ քաղաքացիական կռիվների և խաղաղ շինարարության տարիներին սովետական իշխանության նկատմամբ թշնամական էր:

Իմպերիալիստական պետությունները նախապատրաստվում էին ՍՍՀՄ-ում խափանելու սոցիալիզմի շինարարության գործը: Նրազում էին պատերազմի միջոցով մեր երկրում վերականգնել աշխատավորների համար ատելի հին կարգերը և հույսները դնում էին կապիտալիստական տարրերի վրա, որոնց մնացուկները դեռևս պահպանվում էին նաև գյուղում:

Մեր երկրում գյուղացիական տնտեսությունների կոոպերացումն իրագործվեց նախապատերազմյան հնգամյակների տարիներին: Այդ մասին են վկայում հետևյալ տվյալները.

Գյուղատնտեսության կոլեկտիվացումը ՍՍՀՄ-ում (տոկոսներով)

| Տարիներ | Ըստ գյուղացիական ծխերի թվի | Ըստ ցանքատարածության |
|---|---|---|
| 1928 | 1,7 | 2,3 |
| 1929 | 3,9 | 4,9 |
| 1930 | 23,6 | 33,6 |
| 1931 | 52,7 | 67,8 |
| 1932 | 61,5 | 77,7 |
| 1937 | 93,0 | 99,1 |
| 1940 | 96,9 | 99,9 |

(Տե՛ս «Народное хозяйство СССР в 1956 году» (статистический ежегодник), М., 1957, էջ 105):

Աղյուսակը ցույց է տալիս, որ եթե 1928 թվականին կոլտնտեսություններն իրենց մեջ միավորում էին երկրի գյուղացիական տնտեսությունների 1,7 և ցանքատարածությունների 2,3 տոկոսը, ապա 1940 թվականին՝ համապատասխանորեն 96,9 և 99,9 տոկոսը:

Կոլտնտեսային կարգի հաղթանակով Սովետական Միությունում հաջողությամբ ավարտվեց ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ արտադրամիջոցների սոցիալիստական հանրայնացումը, սոցիալիստական սեփականու-



թյան պետական, համաժողովրդական և կոլտնտեսային-կոոպերատիվ ձևերը դարձան սովետական հասարակության ամուր տնտեսական հիմքը, որի շնորհիվ ավելի ամրապնդվեց սոցիալիստական հասարակության երկու բարեկամական դասակարգերի՝ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը:

Կոլտնտեսային կարգի ուժն ու կենսունակությունն ապացուցեց կյանքը: Հայրենական մեծ պատերազմի տարիներին կոլտնտեսային գյուղացիությունը մեծ փորձությունների ենթարկվեց: Չնայած գերմանա-ֆաշիստական զավթիչներն օկուպացրել էին երկրի գյուղատնտեսական մի շարք կարևոր ու խոշոր շրջաններ, ավերել ու կողոպտել էին 98 հազար կոլտնտեսություններ, 1876 սովխոզներ և 2890 ՄՏԿ, բայց կոլտնեսություններն ու սովխոզները կարողացան ռազմաճակատին ու բնակչությանն անխափան կերպով բավարարել պարենով, իսկ արդյունաբերությունը՝ հումքով: Դա կոլտնտեսային գյուղացիության ջերմ հայրենասիրության վառ դրսևորումն էր, որը վճռական նշանակություն ունեցավ մեր հաղթանակի գործում:

Հայրենական մեծ պատերազմից հետո, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության մի շարք լուրջ միջոցառումների շնորհիվ և բանվոր դասակարգի օգնությամբ կոլտնտեսություններն ու սովխոզները կարճ ժամանակաշրջանում վերականգնեցին պատերազմի հետևանքով քայքայված տնտեսությունները, կարճ ժամանակաշրջանում գերազանցեցին գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը: Այսպիսով, կոլտնտեսային կարգը, որը հիմնվում է ամենաառաջավոր հասարակական սիստեմի վրա, ինչպես խաղաղ շինարարության, այնպես էլ Հայրենական պատերազմի տարիներին ապացուցեց իր կենսական ուժը և առավելությունները մանր գյուղացիական տնտեսությունների նկատմամբ: Նա անցավ զարգացման մեծ ճանապարհ և այժմ ապրում է իր վերելքի նոր էտապը:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պահանջում է ունենալ ո՛չ միայն հզոր արդյունաբերություն, այլև դրա հետ միասին բազմակողմանիորեն զարգացած գյուղատնտեսություն: Դա անհրաժեշտություն է: Չէ՛ որ աշխատանքի հասարակական բաժանման սիստեմում կարևորագույն տեղ է պատկանում գյուղատնտեսությանը: Մարքսիզմ-լենինիզմի կլասիկներն ընդգծում էին, որ հողագործությունը հանդիսանում է աշխատանքի մյուս բոլոր տեսակների ինքնուրույն գոյության բնական հիմքը և անհրաժեշտ նախադրյալը: Մարքսը նշում էր, որ սննդամիջոցների արտադրությունը անմիջական արտադրողների կյանքի և առհասարակ ամեն մի արտադրության ամենաառաջնակարգ պայմանն է:

Արդի փուլում խնդիր է դրվում նյութական արտադրության այդ կարևորագույն ոլորտը՝ գյուղատնտեսությունը զարգացնել այնպես, որ լիովի բավարարվեն երկրի գյուղատնտեսական մթերքների պահանջմունքները: Ինչպես հայտնի է, ոչ վաղ անցյալում սոցիալիզմի տնտեսական օրենքների պահանջները բավականաչափ հաշվի չառնելու հետևանքով երկար ժամանակ անհրաժեշտ համամասնություն չկար մեր էկոնոմիկայի երկու կարևորագույն ճյուղերի՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության զարգացման միջև: Անտեսվում էին գյուղատնտեսության մեջ, մասնավորապես կոլտնտեսային արտադրության բնագավառում, տնտեսության գիտական պլանավորման, նրա արտադրանքի գների ճիշտ սահմանման, գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի զարգացման, նյութական շահագրգռվածության բարձրացման կարևորագույն հարցերը:

ՍՄԿԿ XXIII համագումարը և կուսակցության Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումը մշակեցին արմատական միջոցառումներ, որոնց իրագործումը մեծ չափով կնպաստի կոլտնտեսային կարգի հետագա զարգացմանը, նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդմանը և կոլտնտեսականների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։

Արդի ժամանակաշրջանում կոլտնտեսային կարգի զարգացումը բնութագրվում է նրա արտադրաուժերի աճմամբ ու նյութատեխնիկական բազայի ամրապնդմամբ։ Գյուղատնտեսության, մասնավորապես կոլտնտեսային արտադրության, աշխատանքի տեխնիկական զինվածության բարձրացման համար կարևոր նշանակություն ունեն կապիտալ ներդրումները։ Ընթացիկ հնգամյակում գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները կկազմեն 71 միլիարդ ռուբլի, այդ թվում պետության հաշվին՝ 41 միլիարդ ռուբլի։

Պայքարելով գյուղատնտեսական արտադրության վերելքի համար, կոմունիստական կուսակցությունը մշտական ուշադրություն է նվիրում գյուղատնտեսությունն անհրաժեշտ տեխնիկայով ապահովելու հարցին։ Հնգամյակում գյուղատնտեսության արտադրական ֆոնդերը մոտ երկու անգամ կաճեն և էապես կնորացվեն։ Գյուղի աշխատավորները հնգամյակի առաջին տարում (1966 թ.) ստացան 277 հազար տրակտոր (ֆիզիկական միավոր), 86 հազար հացահատիկի կոմբայն և 106 հազար բեռնատար ավտոմեքենա։ Հինգ տարում (1966—1970 թթ.) կոլտնտեսություններն ու սովխոզները կստանան 1 միլիոն 790 հազար տրակտոր, 550 հազար հացահատիկի կոմբայն, 1 միլիոն 100 հազար բեռնատար ավտոմեքենա և շատ այլ տեխնիկա ու սարքավորում։ Դրա շնորհիվ հնգամյակում գյուղատնտեսության մեջ աշխատանքի էներգազինվածությունը, 1955 թվականի համեմատությամբ, կկրկնապատկվի։

***

Կոլտնտեսային կարգի զարգացման նոր էտապում տեղի է ունենում գյուղի հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործում։ Այդ պրոցեսն ընթանում է սոցիալիստական սեփականության ինչպես կոլտնտեսային, այնպես էլ սովխոզային առավել զարգացման ուղիով։ «Դեպի կոմունիզմ,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— գյուղի հետագա առաջընթացը տեղի կունենա սոցիալիստական տնտեսության երկու ձևերի՝ կոլտնտեսությունների ու սովխոզների զարգացման և կատարելագործման ճանապարհով (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 498)։

Արդի պայմաններում սեփականության կոլտնտեսային ձևը լրիվին համապատասխանում է գյուղի արտադրաուժերի զարգացման մակարդակին և կոլտնտեսային արտադրության կազմակերպման պահանջներին։ Նա հնարավորություն է ընձեռում մի կողմից՝ արդյունավետ կիրառել նորագույն տեխնիկան ու գիտության նվաճումները, ավելի ռացիոնալ օգտագործել նյութական և աշխատանքային ռեսուրսները, մյուսի կողմից՝ կոլտնտեսականների անձնական շահերը ճիշտ զուգորդել հասարակական շահերին։

Գյուղում հասարակական հարաբերությունների կատարելագործումը կհասցնի բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև դասակարգային տարբերությունների աստիճանական հաղթահարմանը։

Մեր երկրի զարգացման ներկա փուլում, երբ աստիճանաբար լուծվում են կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրները, բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դասակարգային փոխհարաբերությունները թևակոխել են իրենց զարգացման նոր էտապը, որը կնշանավորվի նրանց միջև եղած տարբերությունների վերացմամբ։



Կոլտնտեսային կարգը գյուղացիությանը բերեց կրթություն ու լուսավորություն, անչափ հարստացրեց գյուղի կուլտուրական կյանքը։ Վերացավ գյուղի դարավոր հետամնացությունը։ Ցարական Ռուսաստանում գյուղական բնակչության (9—45 տարեկան) միայն 24 տոկոսն էր գրագետ։ 1926 թվականին գյուղում գրագետների թիվը հասավ 51 տոկոսի, իսկ 1959 թվականին՝ 84 տոկոսի։ Այժմ, գյուղական բնակչությունը հիմնականում գրագետ է։ Եթե 1959 թվականին 1000 կոլտնտեսականից 18-ն ունեին թերի և լրիվ միջնակարգ ու բարձրագույն կրթություն, ապա 1966 թվականին՝ 305-ը։ Այժմ մեր հանրապետության կոլտնտեսականների ավելի քան 37 տոկոսն ունեն յոթնամյա, միջնակարգ ու բարձրագույն կրթություն։ Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում և գյուղատնտեսական այլ հիմնարկներում աշխատում են մոտ 8,5 հազար միջնակարգ ու բարձրագույն կրթությամբ մասնագետներ։ Գյուղում ստեղծվել է կուլտուր-լուսավորական հիմնարկների լայն ցանց։ Տարեցտարի ընդլայնվում է բնակարանային շինարարությունը, որն ավելի է գեղեցկացնում մեր գյուղերը։ Բավական է ասել, որ անցած չորս տարում կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով կառուցվել են մոտ 23 հազար բնակելի տուն։

***

Գյուղացիական տնտեսությունների սոցիալիստական վերափոխման մեր երկրի փորձը հանդիսանում է միլիոնավոր աշխատավոր գյուղացիներին սոցիալիզմի շինարարությանը հաղորդակից դարձնելու լենինյան կոոպերատիվ պլանի իրագործման առաջին պրակտիկ ստուգումը, որն ունի միջազգային խոշոր նշանակություն։

Լենինյան կոոպերատիվ պլանը հաջողությամբ իրագործվում է նաև ժողովրդա-դեմոկրատական երկրներում, որոնց մեծ մասում ավարտվել է գյուղատնտեսության արտադրական կոոպերացումը։ Այդ պլանն իրագործելիս եղբայրական երկրների մարքս-լենինյան կուսակցությունները հաշվի են առնում յուրաքանչյուր երկրի տնտեսական, պատմական և ազգային պայմանների առանձնահատկությունները։ Ժողովրդա-դեմոկրատական երկրներում լենինյան կոոպերատիվ պլանի սկզբունքների ստեղծագործական կիրառումը նոր փորձով հարստացնում է գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման տեսությունը և պրակտիկան, որն ոգեշնչող մեծ օրինակ է ամբողջ աշխարհի աշխատավոր գյուղացիության համար՝ կապիտալիզմի դեմ նրանց մղած պայքարում։

Գ. ԳԱԼՈՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ՀԱՆՈՒՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ

*Անդրկովկասում 1918—1920 թվականներին Սովետական Ռուսաստանի վարած քաղաքականության սիստեմատիկ պատմությունը լուսաբանվել է բազմաթիվ աշխատություններում։ Սույն հոդվածում ընթերցողի ուշադրությունն ենք հրավիրում մի շարք նորահայտ փաստաթղթերի վրա, որոնք հնարավորություն են տալիս առավել ճիշտ ըմբռնելու Սովետական Ռուսաստանի այդ ժամանակահատվածի քաղաքականությունը և միաժամանակ հիմնովին հերքելու այդ հարցի շուրջ եղած բուրժուական բնույթի հերյուրանքները։*

*Այստեղ քննարկվում է հիմնականում երեք հարց.*

*1. 1918—1920 թթ. Անդրկովկասում Սովետական Ռուսաստանի վարած քաղաքականության հիմնական սկզբունքները.*

*2. Սովետական Ռուսաստանի խաղացած դերը Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման գործում.*

*3. Անդրկովկասը սովետա-թուրքական հարաբերություններում։*

*1917 թվականի դեկտեմբերին Վ. Ի. Լենինը Սահմանադիր ժողովի մասին գրած իր թեզիսներում, անդրադառնալով Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո ծայրամասերում, այդ թվում և Կովկասում ստեղծվող դասակարգային ուժերի նոր խմբավորումներին, ընդգծում էր, որ այդ պրոցեսը ընթանում է, մի կողմից՝ բուրժուական նացիոնալիզմի և, մյուս կողմից՝ սովետական իշխանության, պրոլետարական-գյուղացիական հեղափոխության միջև մղվող պայքարում։*

*Լենինյան այս թեզը սկզբունքային նշանակություն ունի ինչպես Անդրկովկասում Սովետական Ռուսաստանի վարած քաղաքականության, այնպես էլ կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության ճիշտ մեկնաբանման համար։ Սովետական իշխանության հաղթանակը Անդրկովկասում մի շարք ներքին և արտաքին պատճառներով մոտ երեք ու կես տարի ձգձգվեց, որովհետև օտարերկրյա ինտերվենտները և սպիտակգվարդիականները միացած երկրամասի ռեակցիոն ուժերին՝ միջոցներ չէին խնայում Անդրկովկասը զերծ պահելու Հոկտեմբերի հեղափոխական ներգործությունից։*

*Ձևացած Անդրկովկասի հանրապետություններում իշխանության գլուխ անցած կուսակցությունները վարում էին բացահայտ հակասովետական կուրս, այնուամենայնիվ, Սովետական Ռուսաստանն իրագործում էր երկրամասի ժողովուրդների ազգային շահերն արտահայտող քաղաքականություն։ Հայտնի է, որ Սովետական Ռուսաստանը երբեմն ուղղակի պաշտպանում էր նույնիսկ Անդրկովկասի բուրժուական հանրապետություններին, եթե այդ թելադրվում էր իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի տրամաբանությամբ և բխում աշխատավոր մասսաների շահերից։*

*Անդրկովկասում Սովետական Ռուսաստանի քաղաքականությունը ամբողջովին բխել է կոմունիստական կուսակցության լենինյան ազգային ծրագրի ամենադեմոկրատական սկզբունքներից։ Ազգային հարցի լուծումը ՍՍՀՄ-ում ունի համաշխարհային-պատմական նշանակություն։ Եվ պատահական չէ, որ բուրժուական գաղափարախոսությունը կատաղի հարձակում է գործում կոմունիստական կուսակցության հատկապես ազգային քաղաքականության վրա։*



*Սովետական իշխանության առաջին տարիներին, երբ աշխարհի աշխատավորական լայն մասսաները քաջատեղյակ չէին բոլշևիզմի ծրագրային ու տակտիկական խնդիրներին, բուրժուական գաղափարախոսությունը ջանք էր թափում խեղաթյուրելու կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության սկզբունքները։ Իսկ այժմ, երբ աշխարհի միլիոնավոր ու հարյուր միլիոնավոր մարդկանց համար այդ առեղծվածը լուծված է, երբ լենինիզմը, ամերիկյան ռեակցիոն պրոֆեսոր Ստենլի Փեյջի խոստովանությամբ «ոչ միայն ՍՍՀՄ-ի աշխարհայացքն է, այլև նրա միջազգային և ներքին քաղաքականության հիմքն է, ինչպես նաև աշխարհի հարյուր միլիոնավոր մարդկանց գործունեության ուղեցույցը»* (Page, S. Lenin and world revolution, H. Y. *1959*, p. *XVII*), *բուրժուական գաղափարախոսները ձգնում են ապացուցել ՍՍՀՄ-ում ազգային հարցի լուծման «անպետքությունը», ՍՄԿԿ ազգային քաղաքականության սկզբունքների «անկենսունակությունը», պնդելով, թե իբր ազգային հարցը մեզ մոտ լուծված չէ։ Այդ նպատակով նրանք հաճախ վկայակոչում են Անդրկովկասը։*

*Հայտնի է Վ. Ի. Լենինի մշակած կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության ծրագիրը, որի համաձայն սոցիալիստական հեղափոխությունը բոլոր ազգերին ու ժողովուրդներին տալիս է լիակատար ազատություն և լիակատար ինքնորոշման իրավունք՝ ընդհուպ մինչև ազգային պետականության ստեղծում։ Ազգերի ազատ ինքնորոշման իրավունքն առաջին անգամ հռչակեց Հոկտեմբերյան հեղափոխությունը։*

*Անդրկովկասում Սովետական Ռուսաստանի քաղաքականությունը թելադրվում էր սոցիալիստական հեղափոխության և երկրամասի աշխատավորության շահերով։ Այդ են վկայում ժողկոմսովետի Թուրքահայաստանի մասին դեկրետը, Անդրկովկասյան սեյմի կողմից Անդրկովկասը «անկախ» հայտարարելու ակտի չճանաչումը, Թուրքերի առաջխաղացումը կանխելու միտումով Սովետական Ռուսաստանի ջանքերը, սովետական անկախ հանրապետություններ ստեղծելու լոզունգը և Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի առանձին կոմկուսակցությունների ստեղծումը, դենիկինյան բանդաների դեմ միասնական ճակատ ստեղծելու ձգտումը, Անտանտի իմպերիալիստների գաղութարարական քաղաքականության դեմ պայքարը, երկրամասի կոմունիստական կազմակերպությունների ամրապնդման ուղղությամբ արված քայլերը, մասսաների հեղափոխական ելույթների պաշտպանությունը և այլն։*

*Սովետական կառավարությունն իր ամբողջ քաղաքականությամբ ձգտում էր Ռուսաստանի և անդրկովկասյան կառավարությունների միջև եղած վիճելի հարցերը լուծել արդարության, ժողովուրդների ինքնորոշման ու նրանց ազգային շահերի լրիվ հաշվառման հիման վրա։*

> «Սովետական Ռուսաստանի ամբողջ գործունեությունը Կովկասում,— ասվում է ՌՍՖՍՀ-ի արտաքին գործերի ժողկոմ Գ. Չիչերինի 1920 թ. հուլիսի 19-ի հեռագրում՝ ուղղված դաշնակցական կառավարության արտաքին գործերի մինիստրին,— նպատակ ունի բարեկամաբար աջակցել հայ ժողովրդին ճիշտ այնպես, ինչպես նաև նրան սահմանակից ժողովուրդների հանգիստ կարգացմանը։ Ծանր փորձությունների ժամանակ, որն ապրում են հայ ժողովուրդը և Մերձավոր Արևելքի մյուս ժողովուրդները, Սովետական Ռուսաստանը հանդես է գալիս որպես բոլոր ազգությունների աշխատավորների անշահախնդիր բարեկամ»։

*Գերմանա-թուրքական ինտերվենցիայի ժամանակ (1918 թ.) սովետական կառավարությունը քանիցս վճռականապես հանդես է եկել Բաքվի, ամբողջ Ադրբեջանի ու Անդրկովկասի նկատմամբ Գերմանիայի և Թուրքիայի ոտնձգությունների դեմ։ Սովետական կառավարությունը, ելնելով Անդրկովկասի ժողովուրդների շահերից, որոշակի ջանքեր գործադրեց մասնակցելու 1918 թվականի ապրիլ-մայիսին Բաթումում տեղի ունեցող գերմանա-թուրքիայի ու Անդրկովկասի միջև ընթացող բանակցություններին։ Ահա թե ինչու 1918 թվականի մայիսի 15-ին Չիչերինը ռադիոգրով զգուշացրեց Բաթումի կոնֆերանսի մասնակիցներին, որ առանց իր մասնակցության կնքված պայմանագիրն անօրինական կհամարի։*

Սովետական կառավարությունը բազմիցս վճռական բողոք է հայտնել Գերմանիային ու Թուրքիային՝ Բաքվի վրա թուրքական զորքերի կատարած հարձակման համար։ Նա նույնիսկ որոշակի զիջումներ արեց գերմանական իմպերիալիստներին՝ Բաքուն պահելու նկատառումով։

Սովետական կառավարությունը 1918 թվականի մայիսի 31-ին Գերմանիայում ՌՍՖՍՀ-ի լիազոր-ներկայացուցչին ուղղած հեռագրում Բաքվի վրա գերմանա-թուրքական զորքերի կատարած հարձակումը գնահատում է որպես Բրեստի հաշտության կոպիտ խախտում։ 1918 թվականի հուլիսի 25-ին ՌՍՖՍՀ-ի արտաքին գործերի ժողկոմը նոտայով դիմում է Գերմանիայի դիվանագիտական ժամանակավոր ներկայացուցիչ Ռիցլերին, որտեղ վճռական բողոք է հայտնում Բրեստի պայմանագրի խախտման դեմ։

ՌՍՖՍՀ-ի արտգործժողկոմը 1918 թվականի հոկտեմբերի 10-ին նոտա ներկայացրեց թուրքական կառավարությանը, որտեղ նշվում էր, որ Կարսի, Բաթումի և Արդահանի մարզերում թուրքական իշխանությունները անընդհատ խախտում են Բրեստի պայմանագիրը։ Ի վերջո, երբ թուրքական զորքերը ներխուժեցին Բաքու, Սովետական Ռուսաստանի կառավարությունը չեղյալ համարեց Բրեստի պայմանագրի այն մասը, որը վերաբերում էր Թուրքիային։

1918 թվականի առաջին ամիսներին թուրքական զավթիչները սկսեցին օկուպացնել Հայաստանի տերիտորիան, սրի քաշելով հազարավոր մարդկանց։ Միայն Սովետական Ռուսաստանն էր, որ չնայած գտնվում էր քաղաքացիական պատերազմի ծանր պայմաններում, բողոքեց Գերմանիայի հովանու տակ կատարվող թուրքական այդ բարբարոսությունների դեմ։

> «Թուրքական զորքերի և քրդերի առաջխաղացումը կովկասյան ճակատում,— ասվում էր գերմանական կայսրությանն ուղղված Սովետական Ռուսաստանի 1918 թվականի ապրիլի 18-ի բողոքի նոտայում,— ուղեկցվում է հայ ժողովրդի մասսայական բնաջնջմամբ։ Խաղաղ բնակչությունը, կանայք և երեխաները կոտորվում են հազարներով, նրանց գույքը թալանվում և հրկիզվում է... Այն, ինչ կատարվում է այդ շրջաններում, վկայում է, որ տասնյակ տարիներ կիրառվող հայ ժողովրդի բնաջնջման քաղաքականությունը շարունակվում է նաև այժմ» (Документы внешней политики СССР, том I, М., 1959, стр. 240—241)։

1918 թվականի սեպտեմբերի 20-ին սովետական կառավարությունը նորից հայտարարեց, որ նա չի կարող համաձայնել Կարսի, Արդահանի և Բաթումի շրջանների բնակչության՝ այսպես կոչված, կամքի արտահայտության արդյունքների հետ և այդ մարզերի բնակչության իրավունքները համարում է չօգտագործված, իսկ նշված շրջանների նոր կարգի հարցը՝ չլուծված։

1918—1920 թվականներին Սովետական Ռուսաստանն արթուն հետևում էր Անդրկովկասում իմպերիալիստների և թուրքական նացիոնալիստների ագրեսիվ քայլերին, նպատակ ունենալով խափանել նրանց պլանների կենսագործումը։

Պետք է նշել, որ կուսակցության Անդրերկրկոմի և Ադրբեջանի սովետական կառավարության որոշ ղեկավարներ ոչ բոլոր դեպքերում էին ճիշտ հասկացել Սովետական Ռուսաստանի քաղաքականության սկզբունքներն Անդրկովկասում։ Բազմաթիվ նորահայտ փաստաթղթեր այդ են վկայում։ Ահավասիկ դրանցից մի քանիսը։ 1920 թվականի հունիսին Չիչերինը ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյին ուղղած զեկուցագրում նշում է.

> «Այն ժամանակ, երբ Կենտկոմը որոշել է Հայաստանի և Վրաստանի բուրժուական կառավարությունների նկատմամբ վարել կոմպրոմիսի քաղաքականություն և դիվանագիտական ճանապարհով խլել այնտեղ Անտանտի ոտքի տակի հողը, մերժել է Հայաստանի սովետականացումը, Բաքվի ընկերները իրենց գործողություններով ձախողում են կոմպրոմիսը, մերժում են Կենտկոմի կողմից պահանջվող համաձայնագրի կնքումը Հայաստանի հետ... Բաքվի ընկերների այս ամբողջ մարտական քաղաքականությունը արմատապես հակասում է Կենտկոմի կողմից արդեն մշակված գծին»։

Օգոստոսի 4-ին դարձյալ Կենտկոմի քաղբյուրոյին գրած նամակում Չիչերինը նշում է 11-րդ բանակի առանձին հրամանատարների կողմից բուն Ադրբեջանում վարվող ոչ-ճիշտ քաղաքականության մասին և առաջարկում



անհետաձգելի միջոցներ ձեռնարկել սովետական արտաքին քաղաքականության սկզբունքների ճիշտ կիրառման համար։ Քաղբյուրոյի հանձնարարությամբ մշակվում է պայմանագիր Ադրբեջանի և ՌՍՖՍՀ-ի միջև։ Սեպտեմբերի 20-ին և 21-ին Կենտկոմի պլենումը հատուկ քննարկման առարկա է դարձնում այդ հարցը և որոշում քաղաքականության այն սկզբունքները, որով դաշնակցային հարաբերություններ են ստեղծվում երկու իրավահավասար սովետական հանրապետությունների միջև։

1920 թվականի հունիսի 22-ին Կենտկոմի քաղբյուրոն լսելով «Կովկասում վարվող քաղաքականության մասին» հարցը, որոշում է.

> «Հանձնարարել արտգործժողկոմատին մինչև այժմ քաղբյուրոյի ընդունած որոշումների և դրանցից բխող եզրակացությունների հիման վրա ամենայն ճշտությամբ ձևակերպել հրահանգ՝ Արևելքի մեր առավել պատասխանատու աշխատողների համար»։

Այնուհետև քաղբյուրոն պարտավորեցնում է զինվորական հիմնարկներին այդ հրահանգն ընդունել ի ղեկավարություն և զգուշացնում, որպեսզի նրանք իրենց գործողությունները խստագույն կերպով համաձայնեցնեն այդ ցուցումներին։ Այդպիսի ցուցում է տրվում նաև ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի բոլոր անդամներին։ Հրահանգը ուղարկվում է նաև Կիրովին և Լեգրանին։ Կուսակցության կենտկոմի քաղբյուրոյի և անձամբ Վ. Ի. Լենինի հավանությանն արժանացած հրահանգում ըստ էության ձևակերպված են Սովետական Ռուսաստանի քաղաքականության հիմնական սկզբունքներն Անդրկովկասում։ Դրանք ունեն էական նշանակություն ո՛չ միայն Սովետական Ռուսաստանի արտաքին, այլև ազգային քաղաքականության ճիշտ ըմբռնման համար։ Ահա այն դիրեկտիվները, որոնք Վ. Ի. Լենինի մասնակցությամբ քննարկվել և ընդունվել են ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի կողմից հուլիսի 7-ին և մինչև այժմ գիտական շրջանառության մեջ դրված չեն եղել.

> 1. ՌՍՖՍՀ-ի և Վրաստանի կառավարությունների միջև 1920 թվականի մայիսի 7-ին կնքված պայմանագիրը ենթակա է աներկբա կիրառման և իրագործման՝ իր բոլոր մանրամասնություններով։
>
> 2. ՌՍՖՍՀ-ը պաշտպանելու է խաղաղ և բարի դրացիական հարաբերություններ Վրաստանի, Հայաստանի և Թուրքիայի բուրժուական կառավարությունների հետ։ Ոչ մի դեպքում փորձեր չանել Վրաստանի և Հայաստանի սովետականացման համար.
>
> 3. Ելնելով Վրաստանի հետ կնքած պայմանագրից, սովետական քաղաքականությունը ձգտելու է հասնել այն բանին, որպեսզի Վրաստանի տերիտորիայից դուրս բերվեն անգլիական և մյուս կողմնակի զորքերը, արգելվի այնտեղ սպիտակգվարդիական ջոկատների կազմավորումը և դենիկինյան բանդաների պինումն ու նրանց վերադարձը Ռուսաստան.
>
> 4. Ելնելով պայմանագրից, ճիշտ այդպիսի լեգալ միջոցներով հասնել Վրաստանում կոմունիստների փաստական լեգալիզացիային։ Լեգալ ճանապարհով հասնել նույն բանին նաև Հայաստանում...
>
> 5. Անհրաժեշտ է անպայման ձեռնպահ մնալ Վրաստանի, Հայաստանի և Թուրքիայի կառավարությունների դեմ ապստամբություններ հրահրելու փորձերից...
>
> 6. Հարավային Օսեթիայում սկսված ապստամբությունը անհրաժեշտ է անհիվանդագին կերպով լիկվիդացնել...
>
> 7. Ռուսական զորքերին թույլ չտալ գրավելու վիճելի տերիտորիաները։ ...Ռուսական զորքերի գրաված տերիտորիաներում մեր խնդիրն է՝ ա) պահպանել ընդհանուր կարգ ու կանոն, բ) թույլ չտալ ընդհարում թաթարների (ադրբեջանցիների) և հայերի միջև, ընդ որում հատուկ ուշադրություն դարձնել խառը բնակչություն ունեցող շրջանների վրա, որտեղ այս կամ այն ազգը փոքրամասնություն է կազմում։ Ռուսական ռազմական հրամանատարությունը չպետք է խառնվի քաղաքացիական ներքին կառավարման գործերին, հնարավորություն տալ տեղական բնակչությանն առանց մեր զինվորական հրամանատարության ուղղակի կամ անուղղակի միջամտությանը ստեղծելու իր ընդունած ադմինիստրացիան։
>
> 8. Ռուսական զորքերի կողմից գրավված վիճելի տերիտորիաների բնակչությանը բացատրել, որ այդ տերիտորիաները ժամանակավորապես գրավված են մեր զորքերի կողմից՝ ազգամիջյան կոտորածներ թույլ չտալու համար։ Այդ տերիտորիաների պատկանելության հարցը կլուծվի խառը հանձնաժողովի միջոցով, Ռուսաստանի ներկայա-

ցուցչի նախագահությամբ, ընդ որում հանձնաժողովը կղեկավարվի բնակչության ազգագրական կազմի կամքով:

9. Զաքաթալայի օկրուգի հարցը հանձնված է ադրբեջանական և վրացական խառը հանձնաժողովին՝ Ռուսաստանի ներկայացուցչի ղեկավարությամբ:

*Այդ դիրեկտիվները, որոնք ժամանակին տրվել են Կովկասի ռազմական, սովետական ու կուսակցական օրգաններին, նպատակ են ունեցել, ամենից առաջ, պաշտպանելու Անդրկովկասի ժողովուրդների սուվերեն իրավունքները, նրանց ազգային շահերը, Կովկասում հաստատելու խաղաղություն: Դրանք բխել են ազգերի ազատ ինքնորոշման իրավունքի լենինյան սկզբունքից, բոլոր ժողովուրդների սուվերենությունն ու իրավահավասարությունը ճանաչելու սովետական խաղաղասիրական արտաքին քաղաքականության սկզբունքից:*

*Այս դիրեկտիվները, որոնց կենսագործմամբ խորապես շահագրգռված էին Սովետական Ռուսաստանի կառավարությունը, ՌԿ(բ)Կ Կենտկոմը և անձամբ Վ. Ի. Լենինը, մերկացնում են Սովետական Ռուսաստանին վերագրվող նվաճողական ձգտումների վերաբերյալ բուրժուական հերյուրանքները:*

*Արժեքավոր են այդ առումով նաև Թուրքիայի նկատմամբ Սովետական Ռուսաստանի դիրքին վերաբերող փաստաթղթերը:*

*1920 թվականի աշնանը Հայաստանի վրա թուրքերի ձեռնարկած նոր արշավանքի և Անդրկովկասում Անտանտի ագրեսիվ քաղաքականության ակտիվացման հետևանքով ստեղծվել էր ծանր վիճակ: Անդրկովկասը հղի էր նոր պատերազմով, որին ձգտում էին Անտանտի իմպերիալիստները: Ըստ էության պայքար էր ընթանում Սովետական Ռուսաստանի և Անտանտի իմպերիալիստների միջև, որի ելքից էր կախված ոչ միայն Հայաստանի և Վրաստանի ժողովուրդների բախտը, այլև Ադրբեջանում սովետական իշխանության պահպանման հարցը, ինչպես նաև թուրքական զավթիչների ագրեսիվ պլանների իրագործման հնարավորությունը.*

*Պատմական փաստաթղթերը վկայում են, որ առանց Սովետական Ռուսաստանի ռազմական, քաղաքական ու դիվանագիտական ամենաակտիվ միջամտության և օգնության, Անդրկովկասի ժողովուրդները կզրկվեին ո՛չ միայն* սոցիալիստական ազգային պետականություն ստեղծելու հնարավորությունից, այլև կկորցնեին եղած բուրժուական պետական սիստեմը, և *Անդրկովկասը կվերածվեր Անտանտի իմպերիալիստների ու թուրքական զավթիչների գաղութի:*

*Թուրքական բռնակալները ծնկի էին բերել դաշնակցական Հայաստանին: Հազարավոր ու տասնյակ հազարավոր անմեղ մարդկանց արյունն էր հոսում: Կարծես մոտենում էր թուրքական ազգայնամոլների վաղուց փայփայած ծրագրի՝ Անդրկովկասի հայության լիակատար ոչնչացման ժամը:*

*1920 թվականի հոկտեմբերի սկզբներին Օրջոնիկիձեն ՀԿԿ Կենտկոմի և Կավբյուրոյի հանձնարարությամբ, Չիչերինին հաղորդեց Հայաստանի ծանր դրության և թուրքերի առաջխաղացման վտանգավորության մասին:*

*Օրհասական այդ պահին անգամ դաշնակցությունը շարունակեց Արևմուտքի իմպերիալիստական տերություններին հավատարիմ մնալու իր ազգակործան կուրսը, որն ավարտվեց թուրքական նացիոնալիստների ողորմածությանը մեկընդմիշտ հանձնվելու Ալեքսանդրապոլի տխրահռչակ պայմանագրի կնքմամբ: Այդպիսին էր դաշնակցական մենատերների քաղաքական այդ արկածալի տակտիկան:*

*Ընդառաջելով հայ ժողովրդի ազնիվ գործիչների՝ կոմունիստների թախանձանքին, Սովետական Ռուսաստանը եղբայրական օգնության ձեռք մեկնեց տառապյալ Հայաստանին, մեկընդմիշտ փրկելով նրան ֆիզիկական բնաջնջումից:*

*ՌՍՖՍՀ արտաքին գործերի ժողկոմ Չիչերինը Կենտկոմի քաղբյուրոյին ներկայացրեց որոշման հետևյալ նախագիծը.*

«1. Համաձայնվել ՀԿ(բ)Կ Կենտկոմի և ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կավբյուրոյի կարծիքի հետ՝ Հայաստանում սովետական իշխանություն հաստատելու համար վճռական գործողությունների անհրաժեշտության մասին, 2. քաղաքական օգնություն ցույց տալ նրան թուրքերի հետագա առաջխաղացումը կասեցնելու համար, 3. պաշտ-



պանել սովետական նոր կառավարությունը»: *ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոն Վ. Ի. Լենինի առաջարկությամբ հաստատեց Չիչերինի ներկայացրած նախագիծը* (В. И. Ленин, П. С. С., т. 54, стр. 432):

*Այդ մղձավանջային օրերին հայ ժողովրդին առաջարկվեց նաև մեկ այլ դեղատոմս. «Եթե հայ ժողովուրդը կամենում է ապրել և երկար ժամանակ պահպանել իր պետական ու ֆիզիկական գոյությունը, ապա նա պետք է ունենա ոչ թե ռուսական, այլ թուրքական օրիենտացիա»:*

*Հրեշավոր է սա, սակայն փաստ է: Այդ ուղին էին մեր ժողովրդին առաջարկում իրենց ազգի փրկիչ հորջորջող դաշնակցականները:*

*Դա 1920 թվականի նոյեմբերի 20-ին էր: Հենց այդ նույն օրն էր, որ Օրջոնիկիձեն հաղորդեց կենտրոն, թե Անդրկովկասում ստեղծված վիճակն ավելի է բարդացել, և մենք կանգնած ենք Կովկասյան մեծ պատերազմի շեմին: Մուսավաթականներն այդ օրերին, Օրջոնիկիձեի վկայությամբ, խնդրագրեր էին ուղարկում Քեմալին՝ օգնելու իրենց Ադրբեջանում սովետական իշխանությունը տապալելու համար: Մենշևիկյան Վրաստանը դարձել էր Անտանտի զինված ուժերի և ռուսական սպիտակգվարդիական բանդաների ճամբար: Չիչերինի արտահայտությամբ, Վրաստանը քաղաքականապես և տնտեսապես վեր էր ածվում Անտանտի գաղութի:*

*Օրջոնիկիձեն հաղորդում էր Վ. Ի. Լենինին, թե հավաստի աղբյուրներից հայտնի է, որ սուլթանի կաբինետում տեղի են ունենում փոփոխություններ՝ նրա կառավարության և Անտանտի հետ Քեմալի բանակցությունների համար նպաստավոր պայմաններ ստեղծելու միտումով:*

*Այդ օրերին Սովետական Ռուսաստանի կառավարությունը տեղեկություն է ստանում, որ թուրքերը Սովետական Ռուսաստանից ստացած զենքը օգտագործում են նաև հայերի դեմ: Նոյեմբերի 8-ին Չիչերինն այդ մասին հայտնում է Ստալինին և ավելացնում, որ թուրքերը* խախտել են զենք ստանալու պայմանը. *«պայմանավորված էր, որ զենքը տրվում է արևմտյան ռազմաճակատի համար»: Սովետական կառավարությունը որոշում է դադարեցնել թուրքերին զենք տալը:*

*Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմը 1920 թվականի նոյեմբերի 19-ին Օրջոնիկիձեի ներկայությամբ քննարկում է ստեղծված դրությունը և որոշում խնդրել Սովետական Ռուսաստանի կառավարությանը օգնել հայ ժողովրդին երկրում սովետական իշխանություն հաստատելու համար:*

*Հաջորդ օրը Օրջոնիկիձեն կապվում է Ստալինի հետ և հաղորդում այդ մասին: Նա միաժամանակ նշում է, որ թուրքերն արդեն գրավում են Ղարաքիլիսան, մոտենում են Դիլիջանին: Հայկական բանակ չկա: Բնակչության տրամադրությունը մեր կողմն է:*

«Ղալախի շրջանում հայ պինվորները, սպաները և բնակչությունը դիմում են մեզ խնդրելով...» օգնություն: «Մեր կողմից հետագա դանդաղեցումը հայ ժողովրդի մեջ կարող է ստեղծել տպավորություն, թե մենք ևս իրենց թողել ենք բախտի քմահաճույքին»:

*Ստալինը կասկած է հայտնում, որ Կովկասում ունեցած մեր ուժերով հազիվ թե հնարավոր լիներ շուտափույթ օգնություն կազմակերպել: Օրջոնիկիձեի համառ պնդումից հետո նա հաղորդում է Վ. Ի. Լենինին, որ Օրջոնիկիձեն գտնում է, թե մենք Կովկասի հարավում մեծ պատերազմի շեմքին ենք, պատերազմ, որը նախապատրաստում է Անտանտը դաշնակցած Վրաստանի և Թուրքիայի հետ՝ ընդդեմ մեզ և, առաջին հերթին, ընդդեմ բոլշևիկյան Ադրբեջանի: Ստալինն ավելացնում է, որ ինքն այդ հարցում լրիվ համաձայն է Օրջոնիկիձեի հետ: Չնայած դրան, Ստալինն առաջարկում է հետաձգել օգնությունը Հայաստանին, մինչև նոր ուժերի ժամանումը: «Ըստ իս,— գրում է նա,— կարճ ժամանակով պետք է հետաձգել Օրջոնիկիձեի նախատեսած օպերացիան»:*

*Վ. Ի. Լենինն առաջարկում է Կովկասում ստեղծված վիճակի հարցն անհապաղ քննարկել քաղբյուրոյում և միաժամանակ ցուցում է տալիս արագացնել այնտեղ լրացուցիչ ուժերի ուղարկումը: Նոյեմբերի 27-ին Վ. Ի. Լենինի նախագահությամբ քաղբյուրոն քննարկում է Ստալինի զեկուցումը կովկասյան գործերի մասին: Որոշվում է հանձնարարել Ստալինին Չիչերինի հետ*

միասին, լրացուցիչ միջոցներ ձեռնարկել Կովկասին սահմանակից պետությունների հետ առավել ճիշտ արտաքին քաղաքականություն ապահովելու համար: Այնուհետև քաղբյուրոն անհրաժեշտ է գտնում Վրաստանի, Հայաստանի, Թուրքիայի և Պարսկաստանի նկատմամբ վարել խիստ հաշտվողական քաղաքականություն, որը հնարավորություն կընձեռի խուսափելու պատերազմից: Չպետք է խնդիր դնել արշավելու ո՛չ Վրաստանի, ո՛չ Հայաստանի և ոչ էլ Պարսկաստանի վրա (տե՛ս Ленинский сборник, XXXVI, стр. 144):

Այսպիսով, խուսափելով Կովկասում ակտիվ գործողություններ ծավալելուց, որոնք կարող էին պատերազմի սանձազերծման առիթ ծառայել, ՌԿ(բ)Կ Կենտկոմն անհրաժեշտ էր համարում ուժեր կենտրոնացնել Կովկասում, որպեսզի անհրաժեշտության դեպքում, քաղաքական իրադարձությունների թելադրանքով հնարավոր լիներ թուրքական բնաջնջումից պաշտպանել Անդրկովկասի աշխատավոր մասսաներին:

Զինված ուժերի գերագույն գլխավոր հրամանատար Ս. Կամենևը կասկած էր հայտնում, որ Կովկասում խոշոր ուժերի կենտրոնացումը կարող է պատերազմի ծագման առիթ տալ: Տրոցկին քիչ հավանական էր համարում թուրքերի կողմից մեզ սպառնացող վտանգը և առաջարկում էր դանդաղեցնել զորքերի փոխադրումը Կովկաս: Վ. Ի. Լենինը կտրականապես դեմ դուրս եկավ Տրոցկու առաջարկին և Ս. Կամենևի զեկուցագրի վրա նոյեմբերի 30-ին արեց հետևյալ մակագրությունը. «Ըստ իս 1. չկրճատել այժմ տեղափոխվող զորքերի քանակը. 2. 8 և ոչ թե 5 (էշելոն օրական— Գ. Գ.) (եթե հնարավոր չէ, 8, ապա մաքսիմումը)» ուղարկել Կովկաս:

Կովկասում ստեղծված ռազմա-քաղաքական այսպիսի պայմաններում էր, որ 1920 թվականի նոյեմբերին Հայաստանի աշխատավորներն ապստամբեցին և երկրում հաստատեցին սովետական իշխանություն:

Ի՞նչ են վկայում վերը բերված փաստաթղթերը: Այն, որ ոչ թե Ռուսաստանն էր սվիններով սովետական իշխանություն բերում մեզ, ինչպես փորձում են գործը պատկերել դաշնակցական գրչակներն ու ժամանակակից բուրժուական գաղափարախոսները, այլ հայ ժողովուրդն էր, որ ապստամբության դրոշ պարզեց և օգնության կանչեց սովետական 11-րդ կարմիր բանակին:

Այս հարցում անհրաժեշտ է մի ճշգրտում ևս մտցնել, որը կարևոր է դեպքերի ճիշտ ըմբռնման համար: Դաշնակցական գրականության մեջ տարածված է այն «լեգենդը», թե դաշնակցականները, գիտակցելով թուրքերի կողմից Հայաստանին սպառնացող վտանգը, կամովին իշխանությունը հանձնեցին սովետներին՝ ավելորդ արյունահեղությունից խուսափելու համար:

Այս հարցը արծարծելիս անհասկանալի պատճառներով մոռացության են տրվում Զանգեզուրում այդ շրջանում ծավալված դեպքերը, որտեղ դաշնակցությունն էր դրության տերը, և, մեղմ ասած, հանդես չբերեց «արյունահեղությունից խուսափելու հայրենասիրություն»:

Քեմալական Թուրքիայի նկատմամբ Սովետական Ռուսաստանի, անձամբ Վ. Ի. Լենինի դիրքի ճիշտ մեկնաբանումը քաղաքական ու պատմագիտական կարևորություն ունի: Մանավանդ որ այս հարցում որոշակի շփոթ կա:

Որոշ հետազոտողներ փորձում են առկա հակասությունները լուծել քեմալական շարժման աջ և ձախ թևերի տարբերության նշումով: Մեր խոր համոզմամբ, Անդրկովկասը նվաճելու քաղաքականության հարցում քեմալականները միասնական են եղել և չեն տարբերվել իրենց նախորդներից:

Չնայած Վ. Ի. Լենինը և կոմկուսի մյուս ղեկավարները բազմիցս ամենայն հստակությամբ նշել են Անդրկովկասում քեմալականների վարած հակասովետական նվաճողական քաղաքականությունը, մեր որոշ պատմաբաններ այն կարծիքին են (օր. պրոֆ. Ա. Միլերը), որ, իբր, Քեմալը դատապարտել է պանիսլամիզմի և պանթյուրքիզմի գաղափարախոսությունը և նրանից բխող ագրեսիվ արտաքին քաղաքականությունը (Кемаль Ататюрк. Избранные речи и выступления, М., 1966, стр. 22): Իսկ անգլիացի պատմաբան Լորդ Կինրոսը 1964 թվականին Լոնդոնում հրատարակած իր մի գրքում փորձում է հավատացնել ընթերցողներին, թե Քեմալի քաղաքականությունը «խորապես



խաղաղասիրական է եղել և ոչ մի երկրի չի ներկայացրել ո՛չ քաղաքական և ոչ էլ տերիտորիալ պահանջ», թե Աթաթուրքի քաղաքականությունը եղել է «Թուրքիայի տերիտորիաների կրճատումը մինչև նրա բնական սահմանները» (Lord Kinross. Ataturk L. Riberth of nation, London, 1964, p. 458):

Սովետական Ռուսաստանի կառավարությունը ճիշտ պատկերացում է ունեցել Անդրկովկասի վերաբերյալ Թուրքիայի վարած ագրեսիվ քաղաքականության նկատմամբ և պայքարել է թուրքական նացիոնալիստների նվաճողական պլանների դեմ: Բուրժուական գրականության մեջ առավել սխալ են մեկնաբանվում սովետա-թուրքական հարաբերությունները 1920—1921 թթ.:

Հայտնի է, որ 1920 թվականի սկզբներին, Սովետական Ռուսաստանի կողմից ջախջախված դենիկինյան բանդաները ապաստան էին գտնում մուսավաթական Ադրբեջանում: Վերջինս բանակցությունների մեջ էր Թուրքիայի ազգային ժողովի կառավարության հետ: Ակնհայտ էր այդ բանակցությունների հակասովետական բնույթը: Անտանտի իմպերիալիստներն ամեն կերպ աջակցում էին Անդրկովկասում հակասովետական ուժերի նոր խմբավորմանը:

Սովետական Ռուսաստանի կառավարությունն այդ քաղաքականության վտանգավոր հետևանքն էր համարում Թուրքիայի հետ պատերազմի հնարավորությունը: 1920 թվականի ապրիլի 21-ին Չիչերինը, վերլուծելով Անդրկովկասում ստեղծված վիճակը, գրում է Վ. Ի. Լենինին.

«Բաքվում անգլիացիների փոխարեն կարող են հայտնվել թուրքերը և մենք ստիպված կլինենք այնտեղ գործ ունենալ թուրքական մի ամբողջ բանակի հետ»:

Ադրբեջանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո թուրքական նացիոնալիստները, չկտրելով կապերը մուսավաթիստական հակահեղափոխական ուժերի հետ և վախենալով բացահայտ հանդես գալ Սովետական Ադրբեջանի (միևնույնը կլիներ՝ Սովետական Ռուսաստանի) դեմ, նույնիսկ ողջունեցին Ադրբեջանում սովետական իշխանության հաստատումը, բայց իրենց ագրեսիվ պլաններին նոր գունավորում տվեցին:

Այս առումով սխալ է այն կարծիքը, թե 1920 թվականի աշնանը թուրքական հարձակումը Հայաստանի վրա ուղղված էր իմպերիալիզմի և հատկապես Սևրի պայմանագրի դեմ: Ինքը՝ Քեմալ փաշան է խոստովանում, որ, դեռևս 1920 թվականի մայիսի վերջերին, այսինքն՝ Սևրի պայմանագրի կնքումից դեռ շատ առաջ, իրենք որոշում էին ընդունել հարձակվել Հայաստանի վրա և Կարաբեքիր փաշային նշանակել էին Արևելյան ռազմաճակատի հրամանատար:

Դաշնակցական կառավարությանը 1920 թվականի հուլիսի 7-ին ներկայացրած նոտայով, Թուրքիան պահանջում էր հայկական զորամասերը դուրս բերել Բրեստ-Լիտովսկու պայմանագրով սահմանված բնագծից: Թուրքական կառավարությունը «մոռացության» էր տվել այն փաստը, որ այդ պայմանագիրը վաղուց ի վեր չեղյալ էր հայտարարվել Սովետական Ռուսաստանի կառավարության կողմից: Տերիտորիալ նման պահանջների ներկայացումը Հայաստանին նշանակում էր, որ նոր Թուրքիայի կառավարությունը չէր ուզում հրաժարվել հին Թուրքիայի նվաճողական քաղաքականությունից: Հայաստանի սահմանների վրա կուտակվեցին շատ զորախմբեր:

Երբ Սովետական Ռուսաստանի կառավարությանը հայտնի դարձավ այս փաստը, նա (ինչպես այդ մասին հիշատակվում է Սովետական Ռուսաստանի կառավարության կողմից դաշնակցական կառավարությանը 1920 թվականի հուլիսի 19-ին ուղարկած նոտայում), անմիջապես բողոքագիր հղեց Թուրքիայի կառավարությանը, պահանջելով դադարեցնել զորակոչը:

Միայն Սովետական Ռուսաստանի ճնշման տակ Թուրքիան ստիպված եղավ ժամանակավորապես հետաձգել իր հարձակումը Հայաստանի վրա: Եվ ահա հենց այս ժամանակ էր, որ դաշնակցական կառավարությունը, փոխանակ օգտվելու Սովետական Ռուսաստանի առաջարկած օգնությունից, գերադասեց մնալ փարված Անտանտին, երես թեքել Սովետական Ռուսաստանից, որով և մեր ժողովուրդը շատ բան կորցրեց:

Քեմալ փաշայի իշխանության գլուխ անցնելուց ի վեր, թուրքական նա-

ցիոնալիստների դեմոկրատական մասը երկրին սպառնացող գաղութացման վտանգից պաշտպանվելու համար, Սովետական Ռուսաստանի հետ համերաշխ գործակցելու ձգտում դրսևորեց: Սովետական Ռուսաստանը ընդառաջ գնաց դրան և օգնության ձեռք մեկնեց Թուրքիային՝ իմպերիալիզմի դավերը խափանելու և սուլթանի լուծը թոթափելու համար: Սա էր սովետա-թուրքական բարեկամության բուն միտումը:

Հայտնի է, որ ապրիլի 26-ին Քեմալը նամակով դիմել էր Վ. Ի. Լենինին, առաջարկելով համագործակցել իմպերիալիզմի դեմ մղվող ընդհանուր պայքարում: Այդ նամակը Մոսկվա հասավ հունիսի սկզբներին: Եվ ըստ էության սովետա-թուրքական միջպետական հարաբերությունները սկսվեցին 1920 թվականի հունիսի 3-ին Քեմալ փաշային Չիչերինի գրած նամակով, որով առաջարկվում էր անմիջապես դիվանագիտական և հյուպատոսական հարաբերություններ հաստատել երկու կառավարությունների միջև:

Անդրադառնալով այդ հարցին Չիչերինը Համառուսաստանյան կենտգործկոմի 1920 թվականի հունիսի 17-ի նիստում տված զեկուցման մեջ նշել է.

> «Մենք միայն այն պայմանով ենք մտնում բարեկամական հարաբերությունների մեջ Թուրքիայի հետ, որպեսզի Թուրքիայի և հարևան ժողովուրդների միջև, ինչպիսին հայ ժողովուրդն է, հաստատվի փոխադարձ սահմանապատում, որպեսզի վերջ տրվի փոխադարձ կոտորածին» (Г. В. Чичерин, Статьи и речи, М. 1961, стр. 168):

Սովետական Ռուսաստանը հավատարիմ մնաց վերոհիշյալ սկզբունքին և իրոք պաշտպանեց մեր ժողովրդի շահերը, չխախտելով Թուրքիայի սուվերենությունը:

Սովետական Ռուսաստանի կառավարությունը բազմիցս հայտարարել է, որ վարելով Թուրքիայի հետ բարեկամական քաղաքականություն, ցանկանում է, որ քեմալականները հավատարիմ մնան իրենց հռչակած սկզբունքներին (մասնավորապես ժողովուրդների ինքնորոշմանը) և Թուրքահայաստանում հայերին բավարար տերիտորիայով հանդերձ անկախություն տալու խոստումին: Սակայն շուտով թուրքական կառավարողները բացահայտ թեքվեցին աջ, սկսեցին հարել Անտանտին, իրենց նվաճողական քաղաքականությունն իրագործելու համար:

Եթե մինչև Հայաստանում սովետական իշխանության հաստատվելը թուրքերն Անդրկովկասի նկատմամբ իրենց ագրեսիվ քաղաքականությունը քողարկում էին Անտանտի գործակալ դաշնակցական կառավարության դեմ մղվող պայքարով, ապա Հայաստանի սովետականացումից հետո նրանք սկսեցին գործել անքող: Իհարկե, Սովետական Ռուսաստանի կառավարությունը, հանձին Վ. Ի. Լենինի, խորապես ըմբռնում էր թուրքերի ագրեսիվ ձգտումների իմաստը և՛ առաջին, և՛ երկրորդ դեպքերում:

Եվ ահա թուրքական զորքերը 1920 թվականի աշնանը կրկին ներխուժեցին Հայաստան, նպատակ ունենալով գրավել ոչ միայն Հայաստանը, այլև ամբողջ Անդրկովկասը և, ամենից առաջ՝ Սովետական Ադրբեջանը: Վ. Ի. Լենինը միանգամայն ճիշտ գնահատեց թուրքական կառավարողների քաղաքականությունը, այն կապելով Անտանտի իմպերիալիստական, հակասովետական քաղաքականության հետ:

1920 թվականի հոկտեմբերի 9-ին կուսակցության Մոսկվայի կազմակերպության ակտիվի խորհրդակցությունում տված զեկուցման մեջ Լենինը նշեց.

> «Վերջերս թուրքերը հարձակում են սկսել Հայաստանի վրա, նպատակ ունենալով գրավել Բաթումը, իսկ հետո կարող է, և Բաքուն: Հասկանալի է, որ մենք այդ հարցում պետք է հանդես բերենք մաքսիմում զգուշություն» (Ленинский сборник, XXXVI, стр. 131):

Ելնելով Լենինի ցուցումներից, Գ. Չիչերինը հոկտեմբերի 14-ի № 305 հեռագրում, խիստ վտանգավոր համարելով քեմալականների ռազմական գործողությունները, առաջարկում էր Լեգրանին հետևողականորեն անցկացնել խաղաղ քաղաքականություն, որպեսզի Անդրկովկասում լուրջ ճգնաժամ չառաջանա, և Անտանտը Սովետական Ռուսաստանին չներգրավի պատերազմի մեջ: Պատերազմի՝ իրենց համար ցանկալի ելքի դեպքում իմպերիալիստները մտադիր էին Հայաստանը պաշտպանելու պատրվակով զորք բերել այնտեղ:



Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո Սովետական Ռուսաստանի կառավարությունն ավելի վճռական հանդես եկավ թուրքական զավթողական պլանների դեմ: Անհրաժեշտ է նկատի ունենալ, որ Թուրքիայի նկատմամբ Սովետական Ռուսաստանի քաղաքականությունը պայմանավորված էր նրա ամբողջ արևելյան քաղաքականությամբ և նպատակ ուներ, մի կողմից՝ սանձել թուրքական նացիոնալիստներին, մյուս կողմից՝ նրանց հեռու պահել Անտանտից: Դա չափազանց բարդ խնդիր էր, որի կենսագործումը պահանջում էր մեծ զգուշություն:

Այդ խնդրի բարդությունը խորապես բացահայտեց Չիչերինը սովետների VIII համագումարի ՌԿ(բ)Կ ֆրակցիայի 1920 թվականի դեկտեմբերի 21-ի նիստում ունեցած ելույթում:

> «Արևելքում,— ասել է նա,— շարժումներն ազգային են: Արևելքի ազատագրական շարժումը ուղղված է իմպերիալիզմի դեմ, բայց ըստ էության այն տարբեր է կոմունիզմից: Որպես կոմունիստներ, մենք Արևելքի ազատագրական շարժմանը նպաստում ենք, բայց մեր և նրանց միջև շարունակվում է խոր տարբերությունը և Արևելքում մեր քաղաքականության ամբողջ բարդությունն այն է, որ գտնենք ընդհանուր լեզու և միասին գնանք ընդդեմ համաշխարհային ռեակցիայի, որը Արևելքի միջոցով ձգտում է ստեղծել նոր ճակատ մեր դեմ: Մենք բանակցություններ ենք վարում Պարսկաստանի հետ, կարգավորում ենք մեր հարաբերությունները Թուրքիայի հետ: Բարդ է այն իրադրությունը, որում մենք աշխատում ենք Արևելքում» (Г. В. Чичерин, Статьи и речи, стр. 196):

Ազգային և համապետական շահերի ճիշտ զուգորդմամբ է անհրաժեշտ քննարկել մեր պատմության հարցերը, և պետք է ըմբռնել, որ միայն համապետական հարցերի լուծման միջոցով է հնարավոր եղել պաշտպանել մեր ազգային շահերը:

Հայտնի է, որ Հայաստանում սովետական իշխանությունը հաստատվեց մեր ժողովրդի համար չափազանց ծանր արտաքին և ներքին պայմաններում: Չնայած նոյեմբերի 29-ին երկրում հռչակվել էր սովետական իշխանություն, բայց դաշնակցական կառավարության պարագլուխներին հաջողվեց իր հոգեվարքի ժամին մի անգամ ևս դավել հայ ժողովրդին և ստորագրել Ալեքսանդրապոլի (դեկտեմբերի 2-ի) խայտառակ պայմանագիրը: Դա անելանելի վիճակի մեջ դրեց նորաստեղծ սովետական իշխանությանը:

Քամահրելով Սովետական Հայաստանի և Ռուսաստանի կառավարությունների նոտաները, որոնցով նրանք չէին ճանաչում Ալեքսանդրապոլի պայմանագիրը, թուրքական զավթիչները համառորեն ձգտում էին օրինականացնել այն: Սովետական կառավարությունը 1920 թվականի դեկտեմբերի 19-ի իր նոտայում վճռականորեն պնդում էր, որ «Հաշտությունը Հայաստանի և Թուրքիայի միջև պետք է լինի ժողովուրդների ինքնորոշման վրա հիմնված հաշտություն» (Документы внешней политики СССР т. III, стр. 397—398):

Մինչ թուրքական կառավարության 1920 թվականի դեկտեմբերի 25-ի նոտայում սանձարձակ տոնով նշվում էր, որ «Տերիտորիալ հարցը ամեն մի տարակուսանքից դուրս է» (նույն տեղը, էջ 392): Թուրքական կառավարությունը միաժամանակ մենշևիկյան Վրաստանից պահանջում էր վերադարձնել Բաթումն «իր մայր հայրենիքին»՝ Թուրքիային, և զորքերը դուրս բերել Արդվինի ու Արդահանի մարզերից: Դաշնակցականների պես մենշևիկներն էլ իրենց հոգեվարքի ժամին համաձայնություն տվեցին, որպեսզի թուրքերը օկուպացնեն Բաթումը, Ախլցխան, Ախլքալակը:

Այսպիսով, Քեմալի կառավարությունը փաստորեն շարունակեց Անդրկովկասում երիտթուրքերի նվաճողական քաղաքականությունը, որն ուղղված էր նաև Սովետական Ռուսաստանի դեմ:

1921 թվականի նոյեմբերի 6-ին «Известия»-ն տպագրեց Գ. Չիչերինի «Սովետական իշխանության արևելյան քաղաքականության մեկ տարին» հոդվածը: Ահա թե ինչ է գրում նա դեկտեմբերի 2-ի պայմանագրի մասին.

> «Քյազիմ Կարաբեքիր փաշայի թուրքական զորքերը, հաղթելով դաշնակցական հակահեղափոխական կառավարության զորքերին, գրավեցին Երևանից ոչ հեռու անցնող գիծը: Արդեն Հայկական սովետական կառավարության հռչակումից հետո, Թուրքիան

Ապրիլի 13-ին 11-րդ կարմիր բանակի հրամանատարը ուլտիմատում ներկայացրեց Կարաբեքիր փաշային, պահանջելով անհապաղ հեռանալ Ալեքսանդրապոլից, հակառակ դեպքում, ստիպված կլինի հրաման տալ կարմիր զորամասերին մտնելու նշված տերիտորիան։ Միայն այդ սպառնալիքից հետո Թուրքական զորքերը թողեցին Ալեքսանդրապոլը։ Բայց 1921 թվականի Կարսի բանակցությունների ընթացքում (պատահական չպետք է համարել, որ այդ բանակցություններում Թուրքական դելեգացիայի ղեկավարն էր Կարաբեքիր փաշան), Թուրքերը ձգտում էին Անդրկովկասի սովետական հանրապետություններից յուրաքանչյուրի հետ կնքել անջատ պայմանագիր, որպեսզի նրանց վրա առանձին-առանձին ճնշում գործադրելով նորից ետ խլեին այդ տերիտորիաները։ Եվ եթե չլիներ Սովետական Ռուսաստանի հզոր պաշտպանությունը, բացառված չէր այդ հնարավորությունը։

Բերված փաստաթղթերն էլ բավական են հերքելու Սովետական Ռուսաստանի նկատմամբ բուրժուական գաղափարախոսների կողմից տարածվող հերյուրանքները։ Փաստաթղթերը միաժամանակ վկայում են որ այդ տարիներին հայ ժողովուրդը կարողացավ պահպանել իր ֆիզիկական գոյությունը, ստեղծել ու ամրապնդել իր ազգային պետականությունը միայն Սովետական Ռուսաստանի հովանու ներքո, նրա ռազմա-քաղաքական դիվանագիտական ու տնտեսական հզոր օգնության շնորհիվ։

Այսօր էլ ակտուալ են հնչում Գ. Կ. Օրջոնիկիձեի արտասանած խոսքերը, թե «Բավական է սովետական որևէ հանրապետություն անջատվի 24 ժամով և նա անմիջապես կուլ կտրվի շրջապատող տերությունների կողմից» (II съезд Ком. орг. Закавказья, 1923, Стенограф. отчет, стр. 114)։

Մեր երկրի ժողովուրդները շատ լավ են հասկանում այդ բանը և իրենց հետագա զարգացման ու բարգավաճման երաշխիքը տեսնում են սովետական հզոր պետության ժողովուրդների եղբայրական միության հետագա ամրապնդման մեջ։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՊԱՅՔԱՐԸ ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

(Կուսշրջկոմի քարտուղարի նոթերից)

Վերջին տարիներին Մարտունու կուսշրջկոմը ձգտել է բարձրացնել սկզբնական կուսկազմակերպությունների մարտունակությունը, նրանց դերն ու պատասխանատվությունը արտադրական պլանների և պետական առաջադրանքների կատարման, ներկուսակցական կյանքի աշխուժացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության համար։

Ահա բազմաթիվ օրինակներից մեկը։

Ընդամենը մի քանի տարվա պատմություն ունի Ծակքարի սովխոզը։ Ետ մնացող կոլտնտեսության բազայի վրա ստեղծված այս սովխոզն իր գոյության առաջին տարիներին նույնպես ծանր վիճակում էր. ցածր էր հացահատիկի, կարտոֆիլի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը, խիստ ետ էր մնում անասնապահական մթերքների արտադրությունը։

Կուսշրջկոմը ժամանակին զբաղվեց այս տնտեսությամբ, որի ետ մնալու հիմնական պատճառներից մեկը սկզբնական կուսկազմակերպության անբավարար աշխատանքն էր։ Այստեղ ընկած էր կարգապահությունը, կոմունիստների զգալի մասը խուսափում էր արտադրության մեջ ֆիզիկական աշխատանք կատարելուց, կտրվել էր հասարակական կյանքից, թույլ էր քննադատությունն ու ինքնաքննադատությունը, մարդիկ առաջնորդվում էին՝ փոխադարձ ներողամտության սկզբունքով, որից տուժում էր ընդհանուր գործը։

Շրջկոմի պատասխանատու աշխատողները շատ ուժ ու եռանդ գործադրեցին, մինչև Ծակքարի սովխոզի կազմակերպությունում դրությունը բարելավվեց։ Պարբերաբար այստեղ եղան շրջկոմի քարտուղարները, բաժնի վարիչները և հրահանգիչները, որոնք զրուցեցին կոմունիստների հետ, հուշեցին քննարկման ու լուծման ենթակա մի շարք հարցեր։ Այնուհետև, նրանք մասնակցեցին կուսժողովներին, լսեցին կոմունիստների ելույթները, խորամուխ եղան արծարծված հարցերում և օգնեցին կուսկազմակերպությանը՝ հաջողությամբ լուծելու իր առջև դրված խնդիրները։

Շրջկոմի ակտիվ միջամտության շնորհիվ դրությունը բարելավվեց։ Այժմ Ծակքարի սովխոզի կոմունիստները խորապես գիտակցում են իրենց անելիքները և պայքարում արտադրական պլանների կատարման համար։ Եղած 29 կոմունիստից 16-ը շարքային աշխատողներ են։ Նրանցից հովիվ Համբարձում Գալստյանը 1966 թվականին 100 մայր ոչխարից պլանով նախատեսված 85-ի փոխարեն ստացել և պահպանել է 95 գառ, յուրաքանչյուր ոչխարից նախատեսված 1,8 կիլոգրամի փոխարեն խուզել է 2,4 կգ. բուրդ։ Անվանի հովիվը այժմ պայքարում է ավելի բարձր ցուցանիշների համար։

Նման օրինակներ շատ կարելի է բերել, որոնք սովխոզի բոլոր արտադրամասերում առաջ է բերել ընդհանուր վերելք: Ծակքարցիները կատարում ու գերակատարում են գյուղատնտեսական մթերքների արտադրության պլանները, ստանում հացահատիկի, ծխախոտի և կարտոֆիլի բարձր բերք: Ավելի ակնառու են հաջողություններն անասնաբուծության բնագավառում:

Ծակքարցիներն այս օրերին եռանդուն պայքար են մղում հոբելյանական տարին արտադրական ավելի մեծ հաջողություններով նշանավորելու համար: Սովխոզի կուսկազմակերպությունը (բյուրոյի քարտուղար Ա. Պողոսյան) լավ է գլխավորում կոլեկտիվի մեջ առաջացած արտադրական ակտիվությունը. պարբերաբար հանրագումարի են բերվում սոցիալիստական մրցության արդյունքները, պատի թերթերում և ելյիշովկաներում ժամանակին խրախուսվում են արտադրության առաջավորները, բացահայտում առանձին օղակներում նկատվող թերությունները:

Սկզբնական կուսկազմակերպություններին ղեկավարելու և ուղղություն տալու կարևոր ձև է շրջկոմում նրանց պարբերաբար հաշվետվությունների քննարկումը: Դա կանոնադրական պահանջ է և բխում է մեր կուսակցության կառուցվածքի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներից:

Իհարկե, մենք աշխատում ենք չտարվել միայն հաշվետվությունների քննարկմամբ. գերադասում ենք շրջկոմի պատասխանատու աշխատողներին ավելի հաճախակի ուղարկել գյուղերն ու հիմնարկ-ձեռնարկությունները, որտեղ նրանք մոտիկից զրուցում են մարդկանց հետ, ծանոթանում են նրանց գործերին ու տրամադրություններին և, ապա, կոնկրետ օգնություն ցույց տալիս կուսկազմակերպությունների քարտուղարներին: Սակայն լինում են դեպքեր, երբ անհրաժեշտ է դառնում կոլեկտիվ կերպով միջամտել այս կամ այն կազմակերպության գործերին, անհրաժեշտ ուղղություն տալ նրա գործունեությանը: Այդպես վարվեցինք մենք, օրինակ, Երանոսի կոլտնտեսային կուսկազմակերպության նկատմամբ:

Դա անցյալ տարի էր: Երանոսի կոլտնտեսության կուսկազմակերպությունը խիստ թուլացրել էր իր աշխատանքը, ընկած էր կարգապահությունը, երիտասարդ կոմունիստների հետ աշխատանք չէր տարվում: Վատ էին գործում քաղուսուցման խմբակները. մեծ թվով կոմունիստներ չէին հաճախում պարապմունքներին: Կուսբյուրոն և նրա քարտուղարը հաշտվել էին նման դրության հետ և իրենց պատասխանատու չէին զգում կազմակերպության աշխատանքի համար:

Կուսշրջկոմի բյուրոն լսեց և քննարկեց Երանոսի կոլտնտեսային կուսկազմակերպության հաշվետվությունը, խիստ զգուշացրեց նրա բյուրոյի քարտուղարին և ժամանակ սահմանեց բացահայտված սխալներն ու թերությունները վերացնելու համար: Կուսշրջկոմի բյուրոյի որոշումը քննարկվեց կոլտնտեսության կուսկազմակերպության ժողովում:

Ճշմարտությունը պահանջում է ասել, որ Երանոսի կուսկազմակերպության բյուրոն (քարտուղար՝ Վ. Թումանյան) ճիշտ հետևություններ արեց շրջկոմի բյուրոյի որոշումից և վերակառուցեց իր աշխատանքը: Այժմ այստեղ կուսակցական ժողովներն ու բյուրոյի նիստերը տեղի են ունենում կանոնավոր և լավ են նախապատրաստվում: Նրանցում քննարկվում են կուսկազմակերպության և կոլտնտեսության առջև կանգնած հրատապ հարցեր, ընդունվում են կոնկրետ որոշումներ: Բարձրացել է կոմունիստների ակտիվությունը: Նրանցից շատերը, որոնք նախկինում դասվում էին «պասսիվների» կամ «սա-



կավախոսների» շարքում, այժմ ժողովներում հանդես են գալիս հետաքրքրական ելույթներով, բացահայտում և քննադատում թերությունները, անում խելացի առաջարկություններ:

Այստեղ կանոնավոր գործում են տարրական քաղաքական և մարքսիզմ-լենինիզմի հիմունքներն ուսումնասիրող դպրոցներ: Բոլոր կոմունիստները մասնակցում են պարապմունքներին և տեսական դասախոսություններին: Բարելավվել է նաև ագիտացիան (որին մասնակցում են բազմաթիվ ղեկավար աշխատողներ), կանոնավոր լույս են տեսնում պատի թերթերը և մարտական թերթիկները: Այդ ամենը իր դրական ազդեցությունն է թողել հանրային տնտեսության վրա, որը բռնել է վերելքի ուղին:

Մենք միշտ հետաքրքրվում ենք այն հարցով, թե ինչպես են կուսկազմակերպությունները իրագործում ձեռնարկության ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու կանոնադրական իրենց ֆունկցիան, ինչպե՞ս են պայքարում արտադրական պլանների կատարման, հանրային ունեցվածքի և սոցիալիստական օրինականության պահպանման համար: Այն կուսկազմակերպությունը, որը գործում է կուսակցական աշխատանքի ճիշտ մեթոդներով, շրջկոմն օգնում և մասսայականացնում է նրա փորձը, իսկ այնտեղ, որտեղ կուսկազմակերպության քարտուղարը չգիտե իր ֆունկցիաները, դրանք ժամանակին բացատրում ենք նրան: Նման պարագայում անհրաժեշտ է ունենալ կուսակցական ճիշտ ինֆորմացիա, միշտ իրազեկ լինել ձեռնարկությունների կյանքին, պատշաճ ուշադրություն նվիրել ստացվող ահազանգերին և ժամանակին կանխել հնարավոր սխալները:

Մարտունու № 2 ավտոմեքենաների շարասյունը մի ժամանակ արտադրական առաջադրանքները կատարում էր 40 տոկոսով: Հատկապես վատ էր շինանյութերի փոխադրման գործը: Շարասյան անբավարար աշխատանքի հետևանքով ձգձգվում էր կոլտնտեսությունների բազմաթիվ օբյեկտների կառուցումը: Միաժամանակ աշխատավարձի ուշացումների, իրենց պետի կոպտությունների մասին շատ բողոքներ ու գանգատներ էին ստացվում այդ հիմնարկի բանվորներից:

Պարզվեց, որ բողոքները ճիշտ են: Շարասյան պետ Գ. Պետրոսյանը պարզապես ընդունակ չէր մարդկանց հետ աշխատելու. նա անուղղելի վարչարար էր, հաշվի չէր նստում կուսկազմակերպության և նրա քարտուղարի հետ: Շրջկոմը հարկադրված եղավ համապատասխան կազմակերպությունների առաջ հարց դնել՝ Գ. Պետրոսյանին աշխատանքից ազատելու: Շրջկոմի պահանջը կատարվեց. նոր ղեկավարությունը որոշ չափով բարելավել է շարասյան աշխատանքը:

Մեկ ուրիշ օրինակ: Զոլաքարի կոլտնտեսության կուսբյուրոյի քարտուղար Վազգեն Մախսուդյանը փոխանակ ճիշտ կիրառելու կոլտնտեսության վարչության գործունեության՝ կուսակցական վերահսկողության ֆունկցիան, տարվել էր տնտեսական մանրուքներով, իր վրա վերցրել նախագահի որոշ ֆունկցիաներ (գրավոր և բանավոր կարգադրություններ արել արտելի պաշտոնական անձանց նյութական արժեքներ դուրս գրելու մասին և այլն): Շրջկոմի բյուրոն դատապարտեց այդ կոպիտ սխալը և Վ. Մախսուդյանին ազատեց կուսկազմակերպության քարտուղարի պարտականությունից:

Բազմաթիվ հարցեր լուծելիս, շրջկոմը հենվում է կուսկազմակերպությունների վրա, խորհրդակցում կուսակցական լայն մասսաների հետ, որից գործը շահում է: Այսպես, պահանջվում էր Վաղաշենի կոլտնտեսության նոր

նախագահի թեկնածու առաջադրել այնպիսի մարդու, որը կարողանար շարունակել այդ տնտեսության լավագույն տրադիցիաները, ճանաչեր մարդկանց, հմտորեն գլխավորեր արտելի գործերը: Նախապես մտքեր փոխանակելով, մենք կանգ առանք շրջկոմի բյուրոյի անդամ Տիգրան Սուվարյանի թեկնածության վրա, որի արժանիքները լավ էինք ճանաչում: Բայց նրան ինչպե՞ս կընդունեն վաղաշենցիները, անհրաժեշտ եղավ պարզել տեղում: Երբ խորհրդակցեցինք կոլտնտեսության կոմունիստների հետ, պարզվեց, որ չենք սխալվել: Կոմունիստները միահամուռ պաշտպանեցին նրա թեկնածությունը: Եվ ահա մի քանի տարի է, ինչ նոր նախագահի գլխավորությամբ կոլտնտեսությունն ամրապնդվում է: 1965—66 տնտեսական տարում ձեռք բերած արտադրական աչքի ընկնող ցուցանիշների համար ՍՍՀՄ Գերագույն սովետի հրամանագրով Տ. Սուվարյանը պարգևատրվեց Լենինի շքանշանով:

Կուսակցական աշխատանքում ևս մեծ նշանակություն ունի աշխատողի ինքնուրույնությունը, ինքնագործունեությունը: Փորձը ցույց է տալիս, որ մանր խնամակալությունը թուլացնում է ստորին օղակի կուսաշխատողների պատասխանատվությունը, հնարավորություն չի տալիս զարգացնելու նրանց ստեղծագործական նախաձեռնությունը: Հաշվի առնելով այդ, մենք ձգտում ենք օգնել սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարներին, ընկերաբար հուշել նրանց՝ մոռացության մատնված այս կամ այն խնդրի լուծման անհրաժեշտ եղանակը:

Սակայն պատահում են դեպքեր, երբ հարկ է լինում շրջկոմի և նրա ներկայացուցչի անհապաղ միջամտությունը: Բերքահավաքի եռուն օրերին Վարդենիկի կոլտնտեսության № 7 բրիգադում բերքահավաքը վտանգի տակ էր: Իմանալով այդ մասին, Վարդենիկ ուղարկեցինք շրջկոմի բյուրոյի անդամ Գ. Հունանյանին: Շրջկոմի ներկայացուցչի առաջարկով տեղում հրավիրվեց կոլտնտեսության կուսակցության ժողով՝ նվիրված 7-րդ բրիգադում ստեղծված դրությանը... Բազմաթիվ կոմունիստներ, այդ թվում ընկ. ընկ. Ս. Սարգսյանը, Ա. Կարապետյանը և ուրիշներ, կամավոր աշխատանքի անցան № 7 բրիգադում, մոբիլիզացվեցին աշխատունակ կոլտնտեսականների ուժերը, բարելավվեց դաշտում աշխատողների կուլտուր-կենցաղային սպասարկման գործը և այլն: Շրջկոմի ակտիվ միջամտությունը օգնեց. № 7 բրիգադը կոլտնտեսությունում առաջիններից մեկն էր, որ առանց կորստի հավաքեց բերքը և բարձր ցուցանիշներով փակեց տնտեսական տարին:

Կուսակցական աշխատանքն էապես բազմակողմանի է: Իրենց ամենօրյա գործունեության պրոցեսում կուսկազմակերպությունները լուծում են բազմաթիվ հարցեր: Կուսակցական աշխատանքը միաժամանակ նաև աշխատանք է մարդկանց հետ: Իսկ մարդու մտավոր և ֆիզիկական զարգացման, նրա աշխատանքային գործունեության պրոցեսում ծնվում են բազմաթիվ նոր, ավելի բարդ հարցեր, որոնք նույնպես իրենց լուծումն են պահանջում: Այդպես է կյանքի օրենքը: Եվ ինչքան էլ որ այս կամ այն կազմակերպությունը փորձի միանգամից լուծել իր առջև ծառացած բոլոր հարցերը, դա հնարավոր չի: Ուստի պետք է միշտ ուշադրությամբ ունկնդրել մարդկանց ձայնին, հետևել կյանքի երևույթներին և ամենից առաջ զբաղվել այն հարցերով, որոնք տվյալ պահին գլխավոր են և հրատապ, որոնք ավելի են հուզում մարդկանց: Այդ կապակցությամբ ես ուզում եմ պատմել Թաղագյուղի տերիտորիալ կուսկազմակերպության (քարտուղար՝ Ա. Վարդանյան) աշխատանքի, նրա մի ուշագրավ նախաձեռնության մասին: Այդ կազմակերպությունն իր մեջ միավորում



է նաև գյուղի դպրոցում աշխատող 10-ից ավելի ուսուցիչ-կոմունիստներ և պետք է ասել, որ պատշաճ օգնություն է ցույց տալիս դպրոցի դիրեկտորին և մանկավարժական կոլեկտիվին:

Շնորհիվ դրան, Թաղագյուղում լավ է իրագործվում պարտուսի օրենքը: Ուսուցչական կոլեկտիվը համառ աշխատանք է տանում սովորողների առաջադիմության բարձրացման, երկտարեցիության վերացման համար: Կոմունիստները հանդես են գալիս ուսումնա-դաստիարակչական աշխատանքի բարելավման օգտավետ առաջարկներով: Թաղագյուղի տերիտորիալ կուսկազմակերպության փորձը մասսայականացվեց շրջանային թերթի էջերում:

Անցյալում կուսշրջկոմի հրահանգիչները լինելով տնտեսություններում, ժամանակի մեծ մասը վատնում էին զանազան թվական տվյալներ հավաքելով, քիչ էին զբաղվում կենդանի կազմակերպչական աշխատանքով: Իսկ շրջկոմ վերադառնալուց նրանք երկար ու ձիգ օրեր զբաղվում էին գրագրությամբ՝ տեղեկանքներ պատրաստելով: Գյուղական կուլտուրայի օջախները՝ դպրոցը, ակումբը, ռադիոհանգույցը, գրադարանը, ստորին մամուլը շրջկոմի ներկայացուցիչների տեսադաշտից գրեթե դուրս էին մնացել: Դրա համար այժմ չարժե քննադատական խոսք ասել առանձին աշխատողների հասցեին: Այդպիսին էր շրջկոմի աշխատանքի ընդհանուր ոճը: Կուսակցության XXIII համագումարից հետո զգալի բան է արված կուսակցական աշխատանքի բարելավման համար: Օրինակ, հրահանգիչները լինելով տեղերում, հանգամանորեն զբաղվում են կուսակցական աշխատանքով, զրուցում են կոմունիստների և ակտիվի հետ, պրակտիկ օգնություն են ցույց տալիս քարտուղարներին՝ ներկուսակցական և քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպման գործում, հետաքրքրվում են կուլտուրայի օջախներով, աշխատավորների առաջ հանդես են գալիս քաղաքական զեկուցումներով և զրույցներով, պատասխանում մարդկանց հուզող հարցերին:

Հասկանալի է, որ այս ամենը հրահանգիչներին, ինչպես և շրջկոմի ամեն մի աշխատողի չի ազատում ձեռնարկությունների առջև կանգնած արտադրական պլանների կատարման մասին հոգալուց: Այստեղ ամբողջ խնդիրն այն է, որպեսզի շրջկոմի ներկայացուցիչները հարցին մոտենան կուսակցական աշխատանքի դիրքերից, տնտեսությունների գործերի վրա ազդեն միայն ու միայն նրանց կուսակցական կազմակերպությունների միջոցով:

Ասածներս ավելի առարկայական դարձնելու համար, ուզում եմ պատմել շրջկոմի նախկին հրահանգիչ Գառնիկ Գրիգորյանի՝ Ն. Գետաշենի սովխոզում կատարած մի ուսանելի այցելության մասին: Նա սովխոզ մեկնեց շրջկոմի բյուրոյի քննության համար հարց նախապատրաստելու:

Ն. Գետաշենում խոտհունձի պլանը չէր կատարվում՝ բանվորական ուժի խիստ պակասի պատճառով: Սպասում էինք, ինչպես ասում են, բյուրոյի «ծանր» նիստի: Մինչդեռ շրջկոմի ներկայացուցիչը չշտապեց փաստերի գրառման գործում: Խոտհունձը չէր սպասում ուշացած միջոցառումների: Անհրաժեշտ էր նախ և առաջ կազմակերպել աշխատանքը, հավաքել կոմունիստներին, ակտիվիստներին և մասնագետներին, մտածել բոլորի հետ միասին, խոսել ամեն մեկի հետ առանձին, ունկնդրել նրանց առաջարկությունները և ցանկությունները... Եվ ահա գործը տեղից շարժվեց:

Հրահանգիչը վերադարձավ շրջկոմ մեկ շաբաթ հետո: Վերադարձավ և զեկուցեց, որ այլևս անհրաժեշտություն չկա հարցի քննարկման համար: Իսկ երբ ամփոփվեցին խոտի բերքահավաքի տասնօրյա արդյունքները, Ն. Գետա-

շենի սովխոզում պատկերն արդեն վատ չէր։ Սովխոզը բավարար քանակությամբ կեր հավաքեց նաև աշնանը, որի շնորհիվ հանրային հոտի ձմեռումն անցավ հաջող։

Ավելի արդյունավետ է հենվել կուսկազմակերպության և կոմունիստների վրա, կոնկրետ կազմակերպչական օգնություն ցույց տալ մարդկանց անմիջապես արտադրության պրոցեսում, քան զբաղվել փաստերի ու թերությունների արձանագրությամբ— սա հիմնականն է կուսշրջկոմի հրահանգչի աշխատանքում։

Սերտորեն կապված լինելով սկզբնական կուսակցական կազմակերպությունների հետ, շրջկոմը նրանց համապատասխան օգնություն է տալիս ոչ միայն հանրային տնտեսության զարգացման հեռանկարային հարցերը լուծելու, այլև գյուղատնտեսական ընթացիկ աշխատանքները ժամանակին ու բարձր որակով կատարելու, տարբեր պատճառներով առաջացած այս կամ այն դժվարությունները համարձակորեն հաղթահարելու։

Այդպես պատահեց վերջերս, երբ ուժեղ ցրտահարվեցին կոլտնտեսությունների ծխախոտի ավելի քան 750 հեկտար պլանտացիաները։ Դա լուրջ վնաս էր հանրային տնտեսություններին, որոնք ամեն տարի ծխախոտագործությունից ստանում են մոտ 2 միլիոն 700 հազար ռուբլու դրամական եկամուտ։ Զրկվել դրանից, նշանակում է որոշ չափով ետ պահել հանրային տընտեսությունը, չապահովել կուտակման և կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդերը։

Ինչպես տեսնում ենք, հարցը լուրջ էր և չէր կարող իր վրա չբևեռել կուսշրջկոմի և սկզբնական կազմակերպությունների ուշադրությունը։ Լինելով տեղերում, կուսշրջկոմի ապարատի աշխատողները և կուսակցական ակտիվը սկզբնական կուսկազմակերպությունների միջոցով լայն մասսայական-բացատրական աշխատանք ծավալեցին բոլոր կոլտնտեսականների ու կոլտնտեսուհիների շրջանում, նրանց բացատրեցին ստեղծված վիճակից դուրս գալու ելքը.

— Ցրտահարված պլանտացիաները պետք է նորից սածիլել և ապահովել հոբելյանական տարվա՝ մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարումը։

Այս խոսքերը կրկնվում էին ամենուրեք և կոլտնտեսականներին ոգևորում արագ, առանց ժամանակ կորցնելու գործի անցնել։ Այդպես էլ եղավ։ Հետևելով կոմունիստների անձնական օրինակին, գյուղերից 9—10 հազար հոգի դաշտ դուրս եկան։ Նրանք Իջևանի, Շամշադինի շրջաններից բերված և մեր շրջանի կոլտնտեսությունների ջերմոցներում եղած սածիլները, գյուղատնտեսների և փորձված ծխախոտագործների ցուցումներով, 9 աշխատանքային օրվա ընթացքում խնամքով տնկեցին ու այդպիսով վերականգնեցին ծխախոտի 750 հեկտար պլանտացիան։

Դա աշխատանքային ճակատում մի փայլուն հաղթանակ էր տարերքի դեմ, որը ձեռք բերվեց շրջանի կուսակցական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ ու օգնությամբ։

Դժվար է մի հոդվածում սպառել շրջկոմի և սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքներում եղած բոլոր նշանակալից երևույթները, այն էլ Մարտունու շրջանի, որտեղ վերջին տարիներս ավելի լայն թափով է ծավալվել տնտեսական և կուլտուրական շինարարությունը։ Ներկայումս շրջանում հաշվվում է մոտ 1800 կոմունիստ, որոնք միավորված են 68 սկզբնա-



կան կուսկազմակերպություններում։ Շրջկոմին կից ստեղծված է սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների մշտական գործող սեմինար։ Պարապմունքներն անցնում են կանոնավոր։ Սեմինարի մասնակիցները ուսումնասիրում են կուսակցական շինարարության հարցեր, լսում զեկուցումներ առանձին կազմակերպությունների աշխատանքի փորձի մասին, դասախոսություններ՝ քաղաքական և տեսական ակտուալ թեմաների շուրջը։

Շատ բան է արված սկզբնական կուսկազմակերպությունների աշխատանքի բարելավման ուղղությամբ, բայց դեռևս լրիվին չեն վերացված սխալներն ու թերությունները։ Եղել են դեպքեր, երբ շրջկոմը այս կամ այն կոմունիստին պատասխանատվության է ենթարկել՝ շրջանցելով սկզբնական կուսկազմակերպությանը։

Չի կարելի բավարար համարել կուսակցության շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքը։ Առաջիկայում մենք հատուկ ուշադրություն ենք դարձնելու այդ հարցի լուծման վրա։ Մեր անելիքները մեծ են կոմունիստների մարքսիստական դաստիարակության բնագավառում և այդ նպատակով առաջիկայում մենք պետք է ավելի ամուր հիմքերի վրա դնենք կուսակցական ուսուցման գործը։

Հ. ՍԱՀԱԿՅԱՆ
ՀԿԿ Մարտունու շրջկոմի առաջին
քարտուղար

## ՊԱՏՇԱՃ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԿՈՒՍՇԱՐՔԵՐԻ ԱՃԻՆ

Հանրապետության կուսկազմակերպությունները, առաջնորդվելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներով, զգալիորեն բարելավել են կուսակցական-կազմակերպական աշխատանքը, ուժեղացրել պահանջկոտությունը և ուշադրությունը՝ կուսակցության շարքերում նոր անդամների ու թեկնածուների ընդունելության նկատմամբ։ Կիրառելով կուսակցության մեջ նոր ընդունվողների անհատական ընտրության սկզբունքը, խոր ու բազմակողմանի ուսումնասիրելով նրանց քաղաքական և գործնական արժանիքները, կուսկազմակերպությունները 1965—1966 թվականներին և ընթացիկ տարվա առաջին եռամսյակում ՍՄԿԿ անդամ են ընդունել 11581 և անդամության թեկնածու՝ 9607 հոգի։

1966 թվականին ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների 38,6 տոկոսը բանվորներ են, 12,7 տոկոսը՝ գյուղացիներ, 46,3 տոկոսը՝ ծառայողներ։ Ծառայողների 72,3 տոկոսը ինժեներներ, բժիշկներ, ուսուցիչներ, գյուղատնտեսներ և ժողովրդական տնտեսության այլ մասնագետներ են։

Ներկայումս ՍՄԿԿ Կենտկոմը հատկապես մեծ ուշադրություն է դարձնում կուսակցության շարքերի աճի, նրա սոցիալական ու որակական կազմի բարելավման վրա, այն համարելով կուսակցության ամրապնդման կարևոր պայմաններից մեկը։ Կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրվում է այն բանի վրա, որ կուսակցության շարքերն աճեն ամենից առաջ առաջավոր բանվորների և կոլտնտեսականների հաշվին։

Ելնելով Կենտկոմի ցուցումներից, հանրապետության կուսկազմակերպությունները որոշակիորեն կարգավորում են կուսակցության շարքերը ընդունվածների սոցիալական կազմը։ Այսպես, եթե բանվորները կուսակցության անդամության թեկնածու ընդունվածների մեջ 1955 թ. կազմում էին 24 տոկոս,

ապա 1966 թ.՝ 38,6, իսկ 1967 թ. առաջին եռամսյակում՝ 41,7 տոկոս։

Այս ուղղությամբ լավ աշխատանք են կատարել հատկապես Ալավերդու, Արովյանի, Նոյեմբերյանի, Արթիկի, Երևանի 26 կոմիսարների և Լենինյան շրջանների, Կիրովական քաղաքի կուսակցական կազմակերպությունները։ Այդ կազմակերպություններում կուսակցության շարքերն ընդունվածների թվում բանվորները կազմում են ավելի քան 40 տոկոս, իսկ Սիսիանի, Բասարգեչարի, Վեդու, Կալինինոյի և այլ շրջաններում 1967 թվականի առաջին եռամսյակում ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների ընդհանուր թվում գյուղացիները կազմում են 40—70 տոկոս։

Խրախուսելի է նաև այն, որ կուսկազմակերպությունները ծառայողներից ընդունելություն կատարելիս առավելություն են տալիս ինժեներա-տեխնիկական աշխատողներին։ Այսպես, եթե 1955 թվականին հանրապետությունում կուսակցության շարքերն ընդունված ծառայողների կազմում ինժեներները, տեխնիկները և այլ մասնագետները կազմում էին 62 տոկոս, ապա 1965 թվականին կազմեցին 71,3, իսկ 1966 թվականին՝ 72,3 տոկոս։

1966 թվականին կուսակցության շարքերն ընդունված թեկնածուներից 1249 հոգին (34,5 տոկոսը) կոմերիտականներ, իսկ 682-ը (18,8 տոկոսը) կանայք են։ Չնայած այդ ուղղությամբ ձեռք բերված ընդհանուր լավ ցուցանիշներին, ՀԿԿ առանձին քաղկոմներում և շրջկոմներում նոր ընդունված թեկնածուների մեջ կոմերիտականները և կանայք կազմում են ցածր տոկոս։

1966 թվականի ընթացքում նյութական բարիքներ արտադրող բանվորներից ՍՄԿԿ շարքերն են ընդունվել մոտ 1800 հոգի, որոնցից 989-ը աշխատում են արդյունաբերության, տրանսպորտի, կապի և շինարարության օբյեկտներում, 704-ը գյուղատնտեսության բնագավառում, այդ թվում 245 բանվոր աշխատում են սովխոզներում, իսկ 459-ը՝ կոլտնտեսություններում։ ՀԿԿ XXIII համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում Հայաստանի կոմունիստական կուսակցության թվական կազմը աճել է մոտ 10 հազարով և այժմ այն իր շարքերում ունի ավելի քան 115 հազար կոմունիստ։

Վերջին տարիներին հանրապետությունում ավելի է բարձրացել մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը։ Առաջավոր բանվորների, գյուղացիների, ժողովրդական տնտեսության ու գիտության մասնագետների ներհոսքը կուսակցության շարքերը, փայլուն կերպով վկայում է մեր կուսկազմակերպությունների կապերի ամրապնդումը մասսաների հետ, նրա քաղաքական ազդեցության ու հեղինակության աճը քաղաքի և գյուղի աշխատավորների լայն զանգվածների շրջանում։ Ամենուրեք մարդիկ ձգտում են գտնվել կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում, իրենց աշխատանքով արագացնել կոմունիստական հասարակարգի կառուցումը։ Եվ միանգամայն՝ օրինաչափ է, որ գնալով ավելի է աճում ՍՄԿԿ շարքերն ընդունվել ցանկացող աշխատավորների թիվը։

Շատ կուսկազմակերպություններ ճիշտ են վարվում, երբ կուսակցության շարքերի կարգավորման հարցը սերտորեն կապում են գործարանի, ֆաբրիկայի, սովխոզի ու կոլտնտեսության ներքին կյանքի, նրանց առջև կանգնած կոնկրետ խնդիրների լուծման հետ։ Նրանք իրենց ուշադրությունը կենտրոնացնում են առաջավոր պրոֆեսիայի մարդկանց հետ տարվող նպատակասլաց աշխատանքի վրա։ Նրանց ընդգրկում են հասարակական աշխատանքներում, հանձնարարություններ տալիս, մասնակից դարձնում դոնբաց



կուսակցական ժողովների նախապատրաստմանը, անցկացմանը և կուսակցական լուսավորական ցանցի պարապմունքներին։

Լենինականի և Կիրովականի քաղկոմները, Արովյանի, Սպանդարյանի, Օրջոնիկիձեի, Սիսիանի, Հոկտեմբերյանի, Ալավերդու շրջկոմները հաճախակի քննարկում են ՍՄԿԿ շարքերի ընդունելության պրակտիկայի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության հետ կապված հարցեր և կոնկրետ միջոցառումներ իրագործում նկատված թերությունները վերացնելու համար։ Սակայն, ցավով պետք է ասել, որ հանրապետությունում ոչ բոլոր կուսկազմակերպություններն են այդպես վարվում։ Կան այնպիսիները, որոնք դեռևս չեն մտահոգված կուսակցության շարքերի աճի, նրա որակական ու սոցիալական կազմի կարգավորման համար։

Փաստերը ցույց են տալիս, որ նույնիսկ առանձին կուսկազմակերպություններում լավ չեն ըմբռնել ՍՄԿԿ XXIII համագումարի ցուցումները կուսշարքերի աճի, ընդունվողների որակական կազմի բարելավման մասին։ Կուսակցության շարքերի աճը որոշ վայրերում տեղի է ունենում ո՛չ թե առաջատար պրոֆեսիայի բանվորների և կոլտնտեսականների, այլ գլխավորապես ծառայողների հաշվին։ Այսպես, 1966 թվականին Աշտարակի, Գորիսի, Էջմիածնի, Ղուկասյանի շրջանային կազմակերպություններում ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվածների մեջ ծառայողները 50 տոկոսից ավելի են։ 1967 թվականի առաջին եռամսյակում վիճակն այդ առումով առանձնապես վատ էր Ախուրյանի և Էջմիածնի շրջաններում, որտեղ կուսակցության շարքերն ընդունված անդամության թեկնածուների 53—54 տոկոսը ծառայողներ են։ Եվ դա այն դեպքում, երբ, օրինակ, Էջմիածնի շրջանում կան շատ կոլտնտեսություններ, սովխոզներ, շինարարական ու արդյունաբերական ձեռնարկություններ։

Հանրապետությունում շարունակ ավելանում են արդյունաբերական ձեռնարկությունները, աճում է բանվորների թիվը, կոլտնտեսություններում և սովխոզներում խտանում գյուղատնտեսության հետագա զարգացման համար ակտիվորեն պայքարողների շարքերը, մինչդեռ որոշ շրջաններում կուսակցության շարքերն ընդունված բանվորների և գյուղացիների տոկոսը 50-ից չի անցնում։

Մյուս էական թերությունն այն է, որ առանձին կուսկազմակերպություններ թույլ են կապված մասսաների հետ, տարիներ շարունակ չեն աճում, ուստի և նրանք չեն կարողանում պատշաճ ներգործություն ունենալ տվյալ հիմնարկության ու ձեռնարկության գործերի վրա։

1966 թվականին Ղափանի շրջանի 88 սկզբնական կուսկազմակերպություններից 66 սկզբնական կազմակերպություն (այդ թվում 11 արդյունաբերական, 2 սովխոզային և 9 կոլտնտեսային) ընդունելություն չեն կատարել, իսկ կոլտնտեսային սկզբնական կուսկազմակերպությունները տարվա ընթացքում չեն ընդունել և ոչ մի կոլտնտեսականի, այն դեպքում, երբ շրջանի կոլտնտեսային կուսկազմակերպությունների 30 տոկոսից ավելին սակավաթիվ են։

Նման օրինակներ կարելի է բերել նաև Ղուկասյանի, Թալինի շրջանային կուսկազմակերպություններից։ Ժամանակն է, որ կուսակցության քաղկոմշրջկոմները պատշաճ ուշադրություն դարձնեն սակավանդամ կազմակերպությունների շարքերի աճին և կոմունիստների ուժերի ռացիոնալ տեղաբաշխմանն ու օգտագործմանը։ Ընդամին կուսակցության շարքերի աճը, նրա կազմի կարգավորումը պետք է միշտ զուգակցել արտադրության մեջ կոմունիստների

տեղաբաշխման հետ, այնպես անել, որ արտադրության վճռական տեղամասերը ամրապնդված լինեն կոմունիստներով:

Կան նաև շրջկոմներ և քաղկոմներ, որոնք անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում շինարարական կուսկազմակերպությունների աճին: Մինչդեռ հանրապետությունում մեծ ծավալ են ընդունել շինարարական աշխատանքները, զգալիորեն ավելացել են կառուցվող օբյեկտները: Շինարարական տրեստներում, տեղամասերում, շինմոնտաժային կազմակերպություններում աշխատող բանվորների կազմում քանակական ու որակական մեծ փոփոխություններ են տեղի ունեցել: Շինարարական նոր մեխանիզմների կիրառման շնորհիվ ստեղծվել են նորանոր բանվորական պրոֆեսիաներ (մեխանիզատորների, մոնտաժողների, էլեկտրոմոնտյորների, բետոնագործների, արմատուրագործների և այլն): Չնայած այս ամենին, ՍՄԿԿ շարքերի համալրման գործում շատ քիչ տեղ են գրավում շինարարության մեջ աշխատող առաջավոր պրոֆեսիայի բանվորները: Այդ մասին է վկայում այն փաստը, որ 1966 թվականին շինարարական օբյեկտների 205 սկզբնական կուսկազմակերպություններում ՍՄԿԿ անդամության թեկնածու են ընդունվել ընդամենը 150 բանվոր, մինչդեռ շինարարության մեջ աշխատում են ավելի քան 60 հազար բանվոր:

Շինարարական-մոնտաժային տրեստների ու վարչությունների կուսկազմակերպությունները պետք է անեն ամեն ինչ, որպեսզի աճեն որակապես և քանակապես, դառնան ազդեցիկ ու մարտունակ կազմակերպություններ, նպաստեն շինարարական կոլեկտիվների առջև դրված մեծ ու դժվարին խնդիրների իրագործմանը:

ՍՄԿԿ շարքերի ընդունելությամբ ակտիվ զբաղվելը, իհարկե, ամենևին էլ չի նշանակում ընդունվողներին ներկայացվող պահանջների թուլացում: Այնինչ կան առանձին կուսկազմակերպություններ, որոնք խոր և բազմակողմանի չեն ուսումնասիրում ՍՄԿԿ շարքերն ընդունվողներին, բավարարվում են միայն նրանց արտադրական ցուցանիշներով, անտեսելով քաղաքական, բարոյական և մյուս հատկանիշները: Այդ է վկայում այն փաստը, որ 1966 թվականին և 1967 թվականի առաջին եռամսյակում քաղկոմ-շրջկոմները չեն հաստատել սկզբնական կուսկազմակերպությունների որոշումները 264 մարդու ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվելու մասին: Այդ առթիվ հարկ է նշել ՀԿԿ Վեդիի, Արտաշատի, Հրազդանի շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների անբավարար աշխատանքը, որի պատճառով այդ շրջկոմների բյուրոներում քննարկված ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվողների գործերի 12—20 տոկոսը մերժվել են:

Կուսակցության շարքերում ընդունելության գործին ոչ-լուրջ մոտեցմամբ և թեկնածուների հետ անհրաժեշտ աշխատանքի բացակայությամբ պետք է բացատրել նաև այն, որ նոր ընդունված կուսթեկնածուներից ոմանք չարդարացնելով կոմունիստի բարձր կոչումը, կարճ ժամանակից հետո վտարվում են կուսակցության շարքերից կամ կանոնադրությամբ սահմանված թեկնածուական ժամանակաշրջանում իրենց չարդարացնելու պատճառով չեն ընդունվում ՍՄԿԿ անդամ:

Առաջնորդվելով ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումներով, սկզբնական կուսկազմակերպությունները, ՀԿԿ քաղկոմ-շրջկոմները վերջին ժամանակներս ավելի մեծ ուշադրություն են նվիրում կուսշարքերի անաղարտության պահպանմանը: Այս կամ այն կոմունիստի անձնական գործը քննարկելիս, նրանք ցուցաբերում են զգուշություն և օբյեկտիվ մոտեցում կատարված զանցանք-



ների գնահատմանը, պահանջվող խստություն՝ բոլոր նրանց նկատմամբ, ովքեր անուղղելի են, չեն արդարացնում կոմունիստի բարձր կոչումը: Այսպես, 1966 թվականին հանրապետությունում 256 կուսանդամ-թեկնածուներ վտարվել են ՍՄԿԿ շարքերից կոմունիստին անվայել արարքների համար, 75 հոգի դուրս են մնացել կուսակցության շարքերից՝ ՍՄԿԿ կանոնադրության 8-րդ պարագրաֆը խախտելու պատճառով:

Կուսակցության որակական կազմի բարելավման անհրաժեշտությունը ժամանակի հրատապ պահանջն է: Պրավդա թերթի 1967 թ. հունիսի 1-ի՝ Կուսակցական համալրում խորագրով առաջնորդող հոդվածում ասված է. Կուսակցության դռները բացվում են ոչ բոլորի, այլ միայն արժանավոր հեղափոխական մարտիկների համար: Կուսակցությանը ցուցամոլ կոմունիստներ հարկավոր չեն: Նոր անդամների ընդունելությունը պետք է նպաստի կուսակցական շարքերի մարտունակության բարձրացմանը, նրանց գաղափարական և կազմակերպական համախմբվածությանը: Նույնիսկ եզակի փաստերը, երբ ՍՄԿԿ շարքերն են մտնում անարժան մարդիկ, վնաս են հասցնում կուսակցությանը: Ահա թե ինչու շատ կարևոր է, որպեսզի կուսկազմակերպությունները միշտ հետևեն կուսակցության շարքերն անհատական կարգով ընտրության լենինյան փորձված սկզբունքին, խիստ պահպանեն Կանոնադրությունը, կուսակցական կյանքի լենինյան նորմերը: Պահանջվում է է՛լ ավելի բարձրացնել կոմերիտական կազմակերպությունների պատասխանատվությունը կոմերիտականներին կուսակցության շարքերը երաշխավորելու համար: ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործում կան նաև թերություններ, որոնցից մեկը դիմումների քննարկման անհիմն ձգձգումն է:

Անթույլատրելի է, երբ սկզբնական կուսկազմակերպությունները, քաղկոմ-շրջկոմներն առանց լուրջ պատճառների ամիսներով ձգձգում են ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործերի քննարկումը: Այսպես, օրինակ, Էջմիածնի շրջանի Կարգաբազար գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության ժամկետանց կուսթեկնածու Գ. Ավդալյանի, № 1 շինտեղամասից Կ. Ավետյանի, անասնաբուժարանից Մ. Հայրապետյանի և մյուսների հարցերը շրջանային կոմիտեի բյուրոյում քննության են առնվել կուսկազմակերպությունների որոշումից 5 ամիս անց: ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունվողներ՝ Պողոսյանի, Մանասերյանի, Ղուկասյանի, Հովակիմյանի և շատ ուրիշների հարցերը շրջկոմում քննարկվել են կազմակերպության որոշումից 5—6 ամիս, իսկ Կ. Ղարիբյանինը և Կ. Գասպարյանինը քննարկվել են 10 ամսից հետո: Այսպիսի դեպքերում թեկնածուական ժամանակաշրջանի գերակշռող մասը անցնում է ապարդյուն և կուսկազմակերպությունները թեկնածուներին անդամ են ընդունում առանց խորապես ստուգելու նրանց գործնական, բարոյա-քաղաքական հատկությունները: Նման փաստերը բյուրոկրատիզմի դրսևորում է:

Նշված թերությունները խոսում են այն մասին, որ առանձին շրջկոմներում և քաղկոմներում վիճակագրական հաշվետվությունների քննարկմանն ու հաստատմանը ձևական վերաբերմունք են ցուցաբերում, թվերի և փաստերի ետևում չեն տեսնում իրենց աշխատանքի կոնկրետ արդյունքները, չեն կատարում վերլուծություններ և, հետևապես, չեն նկատում թերությունները:

Առանձին կազմակերպություններ և շրջկոմներ ընդունելության գործերը հաճախ ձևակերպում են սխալներով: ՍՄԿԿ շարքերն ընդունվողների համար Կենտկոմի սահմանած անկետաները թերի են լրացվում, երբեմն նույն գոր-

ծին կցված փաստաթղթերում բերվող տվյալները հակասում են իրար: Անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում երաշխավորագրերի օրինականության, ժողովներում ըստ էության արտահայտված ընկերների ելույթների, առաջարկությունների ու որոշումների վրա: Այդ է պատճառը, որ երբեմն հանդիպում ենք այնպիսի դեպքերի, երբ կոմունիստները, նույնիսկ կուսկազմակերպության քարտուղարները ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցում թույլ են տալիս կանոնադրական կոպիտ խախտումներ: Այսպես, ուսանողական հանրակացարանների վարչության կուսկազմակերպության անդամներ Ա. Ղազարյանը և Ա. Ավդալյանը երաշխավորագրեր են տվել հաշվապահ Ռ. Գալստյանին, որ իբր նրան ճանաչում են արտադրական և հասարակական միամյա համատեղ աշխատանքում, մինչդեռ իրականում նրանք միասին աշխատել են ընդամենը 8 ամիս: Իսկ կուսկազմակերպության քարտուղար է. Մարտիրոսյանը, փոխանակ ստուգելու, հայտաբերելու և կանխելու այդ կանոնադրական կոպիտ խախտումը, ինքը ևս տալիս է երաշխավորագիր: Ավելին, նա առանց կուսկազմակերպության ժողով հրավիրելու, կեղծում է ՍՄԿԿ անդամության թեկնածու ընդունելու վերաբերյալ կուսկազմակերպության որոշումը և գործը ներկայացնում 26 կոմիսարների շրջկոմի հաստատմանը: Վերջինս, ժամանակին խորամուխ չլինելով գործի էության մեջ, հաստատում է սկզբնական կուսկազմակերպության որոշումը, հետագայում հայտաբերելով այդ կոպիտ խախտումները, հարկադրված չեղյալ է համարում իր նախկին որոշումը և կուսակցական տույժի ենթարկում ինչպես երաշխավորող կոմունիստներին, այնպես էլ կուսկազմակերպության քարտուղարին:

Առանձին կուսկազմակերպություններում պատշաճ նշանակություն չի տրվում նման խախտումներին: Որոշ կազմակերպություններ կուսակցության XXIII համագումարի կողմից գործող կանոնադրության մեջ մտցված փոփոխությունների պարզաբանման ուղղությամբ անհրաժեշտ աշխատանք չեն կատարում: Այդ պատճառով էլ լինում են դեպքեր, երբ կուսակցության շարքեր ընդունվողներին երաշխավորում են այն կոմունիստները, որոնք չունեն 5 տարվա կուսակցական ստաժ: ՍՄԿԿ շարքերն են ընդունում ժողովին մասնակիցների ձայների բացարձակ մեծամասնության քվեարկությամբ, մինչդեռ այժմ պահանջվում է ժողովին մասնակցող ՍՄԿԿ անդամների 2/3 ձայն և այլն:

ՍՄԿԿ շարքերի ընդունելության հարցը սերտորեն առնչվում է երիտասարդ կոմունիստների քաղաքական-դաստիարակության հետ: Չնայած որոշ կազմակերպություններ այդ ուղղությամբ դրական գործ են կատարում, բայց դեռևս կան թերություններ: Դաստիարակչական անբավարար աշխատանքի հետևանքով երիտասարդ կոմունիստների մի մասը հաճախ պասիվանում են, կորցնում հետաքրքրությունը հասարակական աշխատանքի նկատմամբ, աստիճանաբար կտրվում կուսակցական կյանքից և դուրս մնում կուսակցության շարքերից:

Կուսակցության շարքերի աճը և երիտասարդ կոմունիստների քաղաքական-գաղափարական դաստիարակությունը ներկուսակցական աշխատանքի ակտուալ և մշտական հարցերն են: Ուստի կուսակցական կոմիտեները, կուսկազմակերպությունները և բոլոր կոմունիստներն ավելի ակտիվորեն և պատասխանատվության բարձր զգացումով պետք է վերաբերվեն այդ գործին:

Ս. ԶԱԼԻՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի կուսակցական միասնական տոմսի և վիճակագրական սեկտորի վարիչ

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՍՈՎԽՈԶՆԵՐԸ ԴԱՐՁՆԵԼ ՇԱՀՈՒԹԱԲԵՐ

Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Նոյեմբերյանը Հայաստանի հյուսիս-արևելյան շրջաններից է: Վերջին երկու տասնամյակում պետությունը հսկայական գումարներ է ներդրել շրջանի Ցամաք գետի հովիտը ջրով ապահովված այգեգործական բազա դարձնելու համար: Այդ և մյուս միջոցառումների իրականացման շնորհիվ Դեբեդ գետի աջ ափի փշակալած տափաստանում ստեղծվեցին խաղողի, տանձի, խնձորի, դեղձի, ձիթապտղի, նուշի, արմավենու, նռան, թզի, կաղինի փարթամ պլանտացիաները: Իսկ նշանավոր Ջեյթունի սովխոզը գեղազարդող մերձարևադարձային զանազան նոճիները, սեկվոյաները, բուրանոճիները, լիբանանի մայրիները և այլ ծառատեսակներ, պատսպարելով կանոնագիծ այգիները, ստեղծել են մի վեհաշուք տեսարան: Այդ վայրն աշխարհահռչակ գիտնական Վ. Համբարձումյանը իրավամբ անվանել է «Հայկական կալիֆորնիա»:

Նոյեմբերյանի տասներկու սովխոզների և չորս կոլտնտեսությունների էկոնոմիկայի գլխավոր ուղղությունը այգեգործությունն ու անասնապահությունն են, իսկ որոշ տնտեսություններում՝ նաև ծխախոտագործությունը: Այսպես, 1966 թվականին բոլոր սովխոզների ընդհանուր եկամուտը կազմեց 4467 հազ. ռուբլի, որի 42,6 տոկոսը ստացվեց այգեգործությունից, 34,6 տոկոսը՝ անասնապահությունից, 15 տոկոսը՝ ծխախոտագործությունից: Ներկայումս շրջանի համախառն արտադրանքի 70 տոկոսը տալիս են սովխոզները: Շրջանի ընդհանուր անասնագլխաքանակի, վարելահողերի, այդ թվում ոռոգելի հողերի 66—70 տոկոսը բաժին է ընկնում սովխոզներին: Ուստի, սովխոզային արտադրության գիտական կազմակերպման և խելացի ղեկավարման միջոցով կարելի է հասնել մեծ արդյունավետության:

Ջեյթունի, Լալվարի և Հաղթանակ սովխոզները տնտեսապես ու կազմակերպչորեն արդեն ամրապնդվել են, դարձել շահութաբեր: Ջեյթունի մերձարևադարձային պտուղների սովխոզը (որը կազմակերպվել է 1949 թվականին) գլխավորում է սոցիալիստական աշխատանքի հերոս, բազմավաստակ այգեգործ Բագրատ Վարդանյանը: Տարիների ընթացքում մարդիկ իրենց քրտնաջան աշխատանքով ջրհան կայաններ կառուցեցին, ծառեր տնկեցին, խնամեցին ու աճեցրին շուրջ 1000 հեկտար այգիներ և ծաղկած այգեստան դարձրին այդ երբեմնի կիսաանապատը: Միայն վերջին 3 տարում սովխոզը

հավաքեց շուրջ 7,5 հազար տոննա քաղցրահամ մրգեր, որի իրացումից ստացավ ավելի քան 1629 հազ. ռուբլու զուտ եկամուտ։

Առաջավոր և շահութաբեր սովխոզներից բացի շրջանում դեռևս կան այնպիսիք, որոնք նվազ բերքատվության և անասունների ցածր մթերատվության հետևանքով գյուղատնտեսական տարին փակում են վնասով։ Անցյալ տարի Կողբի սովխոզի վնասը հասավ 15663 ռուբլու։ 1966 թվականը շուրջ 25 հազար ռուբլի վնասով փակեց նաև Պտղավանի սովխոզը։

Ի՞նչն է պատճառը, որ Նոյեմբերյանի շրջանում դեռևս կան ոչ շահութաբեր կամ նվազ շահութաբեր սովխոզներ։ Դրա հիմնական պատճառներից են՝ աշխատանքի վատ կազմակերպումը, բանվորների նյութական շահագրգռվածության անտեսումը, ագրոկուլտուրայի ցածր մակարդակը, ինչպես նաև բերքի կորուստների և վատնումների դեմ տարվող անբավարար պայքարը։ Քննենք դրանցից մի քանիսը։

Հանրահայտ է, որ գյուղատնտեսության բանվորները (ինչպես նաև հասարակական արտադրության մյուս ոլորտներում աշխատողները), ամենից առաջ, պետք է շահագրգռված լինեն ընդլայնելու արտադրությունը։ Դա հասարակության առաջին կենսապայմանն է։ Այդ ասպարեզում ինչպես ՍՍՀՄ շատ շրջաններում, այնպես էլ մեր հանրապետությունում որոշակի գործ է կատարված. կան բազմաթիվ սովխոզներ, ուր արտադրության ճիշտ կազմակերպման և խելացի տնտեսավարության շնորհիվ բանվորի աշխատանքը (էլեկտրազինվածության, մեքենայացման ու վարձատրության տեսակետից) գրեթե հավասարվել է արդյունաբերական ձեռնարկության բանվորի աշխատանքին։ Նման պայմաններում սովխոզային արտադրության մեկ բանվորի ամսական միջին աշխատավարձը հասնում է 120—150 ռուբլու (առանձին տեղերում նրանք դրանից ավելի են ստանում)։ Այդպիսի սովխոզներն ունեն տնտեսության օժանդակ ճյուղեր՝ թռչնաբուծություն, ջերմոցային ու պահեստային տնտեսություն, հումքի վերամշակում և այլն, որի շնորհիվ հիմնական բանվորական ուժը օգտագործվում է համարյա ամբողջ տարին։

Ցավոք, վիճակն այդպես չէ Նոյեմբերյանի սովխոզներում։ Այստեղ բանվորները տարեկան միջին հաշվով աշխատում են 6—8 ամիս, որի հետևանքով էլ տարվա մեջ մեկ բանվորի ամսական միջին աշխատավարձը կազմում է 65 ռուբլի։ Ահա թե ինչու շրջանի սովխոզներից մեծ թվով բանվորներ աշխատում են շինարարական կազմակերպություններում կամ ժամանակավորապես շրջանից մեկնում են այլ աշխատանքի։ Այդ երևույթին վերջ տալու և բանվորներին ամբողջ տարին աշխատանքով ապահովելու համար, Նոյեմբերյանի սովխոզներում պետք է զարգացնել օժանդակ արտադրական ճյուղերը։ Այսպես. Դեբեդ գետի հովտում (ուր աճում են նույնիսկ մերձարևադարձային կուլտուրաներ) կանաչեղեն կարելի է գտնել միայն ամռան երկու-երեք ամիսներին, իսկ մյուս՝ 9—10 ամիսներին նրանք բանջարեղենը հայթայթում են հարևան շրջաններից և քաղաքներից (Թբիլիսի, Ղազախ և այլն)։ Մինչդեռ, Դեբեդի հովտի բոլոր տնտեսությունները մեծ հնարավորություններ ունեն զարգացնելու ջերմատնային ու ջերմոցային տնտեսություն՝ աճեցնելու վաղահաս բանջարեղեն, որի իրացման համար սպառման լայն շուկա կա ինչպես շրջանում, այնպես էլ շրջանից դուրս (Ալավերդի, Կիրովական, Երևան և այլ արդյունաբերական քաղաքներ)։ Դրա համար կա գրեթե ամեն ինչ՝ և՛ նյութական միջոցներ, և՛ բանվորական ուժ. բացակայում է միմիայն կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարների ձեռներեցությունը։



Մեր երկրի մերձքաղաքային շատ սովխոզներ թաղանթածածկ ջերմոցներում աճեցնում են պոմիդորի, վարունգի և այլ բանջարեղենի հարուստ բերք։ Օրինակ, Մոսկվայի մարզի Կոլոմենսկի շրջանի Սերգեևի անվան սովխոզում անցյալ տարի 3 հեկտար թաղանթածածկ ջերմոցներում աճեցրել են 150 տոննա վաղահաս վարունգ։ Մեկ կիլոգրամի արտադրության ծախսերը կազմել են 18 կոպեկ, իսկ իրացման գինը՝ 46 կոպեկ է։ Ինչպես ասում են, թվերը կոմենտարների կարիք չեն զգում։

Արտադրական օժանդակ ճյուղերի ստեղծումը սովխոզների շահութաբերության բարձրացման կարևոր ռեզերվն է, որի օգտագործումն անհետաձգելի խնդիր է։

Հայաստանի կորիզավոր ու հնդավոր պտուղների տարեկան միջին արտադրությունը հասնում է մոտ 75 հազար տոննայի։ Ավելի քիչ ծախսումներով դրա մի մասը հնարավոր է պահեստավորել՝ ձմռան ամիսներին բնակչությանը միրգ ու խաղող մատակարարելու համար։ Այդ գործը իրենց սուղ հնարավորություններով ավելի լավ են կազմակերպում անհատները, քան սովխոզները, կոլտնտեսությունները և պահածոների գործարանները, որոնք դրա համար կարող են ստեղծել նախապայմաններ։

Անցյալ տարի Երևանի խանութներից շատերը մեծ հաճույքով գնում էին սև խոշոր սալոր (իտալա-հունգարական սորտի), կարծելով թե ներմուծված է։ Մինչդեռ այն պահեստավորել և ձմռանը առևտրական կազմակերպություններին էր բաց թողել Այրումի պահածոների գործարանը, որի 200 տոննանոց մրգասառնարանը այժմ դատարկ է։ Նման մրգասառնարաններ ու մրգապահեստներ կարելի է կառուցել ամեն մի տնտեսությունում։ Սակայն պլանավորվող օրգանների անհոգատար ու անտարբեր վերաբերմունքի հետևանքով այդ գործը տեղից չի շարժվում և մեր հանրապետության բնակչությունը ձմռան ամիսներին զրկված է խանութներից պահեստավորված միրգ գնելու հնարավորությունից։ Այս գործում թերանում է և ՀՍՍՀ գյուղական շինարարության մինիստրությունը։ Ահա չորրորդ տարին է, ինչ շինարարները Ջեյթունի ու Հաղթանակի սովխոզներում կառուցում են 100-ական տոննա տարողությամբ մրգապահեստներ, բայց չի երևում, թե շինարարությունը երբ կավարտվի։

Գյուղատնտեսական մթերքների ավելացման և նրանց ինքնարժեքի իջեցման գործում կարևոր նշանակություն ունի ոռոգումը։ Պետությունը վերջին երեք տարում Նոյեմբերյանի շրջանի ջրաշինարարական աշխատանքների համար հատկացրել է ավելի քան 5 միլիոն ռուբլի։ Սովխոզների և կոլտնտեսությունների շուրջ 8000 հեկտար ոռոգելի հողերի համար դրվել են տարբեր հզորության 22 ջրհան պոմպեր և հիմնականում ավարտվել է ներքին ոռոգման ցանցի շինարարությունը։ Բայց ցավալին այն է, որ շրջանում ոռոգելի ջուրը մեծապես շռայլվում է, չկա ճիշտ հաշվառում։ Այսպես (շրջանի ջրային տնտեսության տվյալներով), 1966 թվականին Ջեյթունի, Հաղթանակի և Պտղավանի սովխոզներին բաց է թողնվել 54 միլիոն խմ ջուր։ Իսկ այդ տնտեսություններն ունեն ընդամենը 3000 հեկտար ոռոգելի տարածություն, որոնց ջրի պահանջը կազմում է միայն 12 միլիոն խմ։ Փաստորեն ջուր ստացող սովխոզները խնայողաբար չեն օգտագործում այն, որի հետևանքով ջրի հսկայական կորուստ է լինում։ Եվ այդ այն դեպքում, երբ ձիթապտղի, նռենու և թզենու պլանտացիաների որոշ տարածություններ չջրելու պատճառով չորացել ու փչացել են։

Ինչպես նշվեց վերևում, հսկայական գումարներ են ծախսվել ջրաշինարարական աշխատանքների համար, սակայն այնպիսի տարրական, բայց կարևոր հարցեր, ինչպիսիք են՝ ջրհան կայաններում ջրաչափերի տեղադրումը, ոռոգման ներքին ցանցի շահագործման ու ջրօգտագործման վերահսկողության ապահովումը մինչև օրս ձգձգվել ու չեն լուծվել ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրությունների կողմից։ Այդ պատճառով էլ տեղի է ունենում ոչ միայն ջրի, այլև բերքի կորուստ, եկամտաբերության կորուստ։ Հասկանալի է, որ տնտեսավարման նման ձևը երբևիցե չի նպաստի սովխոզների շահութաբերության բարձրացմանը։

Գյուղատնտեսական արտադրության արտադրանքի ինքնարժեքի բարձր լինելը գլխավորապես արդյունք է աշխատանքի ցածր արտադրողականության։ Վերջին երեք տարում Նոյեմբերյանի սովխոզներում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը կազմել է 7,5 ցենտներ, եգիպտացորենի սիլոսինը՝ 82, ծխախոտինը՝ 13, միամյա և բազմամյա խոտերինը՝ 17,3, բոստանա-բանջարանոցային կուլտուրաներինը՝ 70, խաղողինը՝ 54,4, պտղինը՝ 47,3 ցենտներ։ Աշխատանքի նվազ արտադրողականության պատճառով սովխոզները չեն կատարում գյուղատնտեսական կուլտուրաների ու անասնաբուծական մթերքների ինքնարժեքի իջեցման առաջադրանքները։ Այսպես, Շավարշավանի, Նոյեմբերյանի, Կողբի, Դոստլուի անասնապահական սովխոզներում 1 ցենտներ տավարի, խոզի և ոչխարի մսի արտադրության վրա ծախսել են 10—20 ռուբլի ավելի, քան նախատեսված է եղել պլանային ինքնարժեքով։ Առանձին տնտեսություններում գյուղատնտեսական արտադրության արտադրանքի ինքնարժեքը երկու և ավելի անգամ բարձր է, քան դրանց պետական գնման գները։

Անասնաբուծական մթերքների ինքնարժեքի վրա անդրադառնում է կերի կայուն բազայի բացակայությունը։ Անցյալ տնտեսական տարում շրջանի սովխոզներն իրենց ուժերով կուտակել էին մոտ 5000, իսկ պետությունից գնել են 3400 տոննա կերամիավոր։ Նրանք 1966 թվականին կաթի, բրդի և ձվի արտադրանքից օգուտ չեն ստացել ու տարին փակել են 141 հազար ռուբլի վնասով։ Բացի այդ, անցյալ տարի սովխոզները պետությանը հանձնել են միջակից ցածր գիրությամբ 219 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, յուրաքանչյուրից կորցնելով 70—120 կգ միս։ Տնտեսավարման նման կարգի թերությունների վերացումը, ինչ խոսք, կնպաստի սովխոզների շահութաբերության բարձրացմանը։

Անասնաբուծական մթերքների ինքնարժեքի վրա բացասաբար է ազդում նաև աշխատատար պրոցեսների մեքենայացման ցածր մակարդակը։ Սովխոզներում հաշվվում է ավելի քան 7000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից՝ 2300 գլուխ կով։ Անասնապահական ֆերմաներից և ոչ մեկը կոմպլեքս մեքենայացման չի ենթարկվել։ Ավելին, կովանոցներում տեղակայված չեն ավտոմատ ջրամխոցներ, մինչդեռ գիտությամբ ու պրակտիկայով հաստատված է, որ ավտոմատ ջրամխոցների տեղադրման միջոցով կարելի է կովերի միջին կաթնատվությունը բարձրացնել 15—17 տոկոսով։ Սակայն դրա բացակայության հետևանքով սովխոզները տարեկան կորցնում են մոտ 5000 ցենտներ կաթ կամ ավելի քան 77 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։

Անհրաժեշտ է նշել, որ որևէ սովխոզի կամ կոլտնտեսության աշխատանքի գնահատման չափանիշը տարիներ շարունակ եղել է ֆուրաժային կովի կաթնատվությունը, մեկ հեկտար հողատարածությունից ստացվող արդյունքի



քանակը։ Իսկ թե ինչպիսի ծախսումներով է այդ մթերքն արտադրվել, ինչ է նստել այն արտադրողներին և որքան եկամուտ ունի սովխոզը հեկտարի, մեկ աշխատունակ բանվորի հաշվով՝ գրեթե անտեսվում է։

Ամեն մի տնտեսության կենսունակության չափանիշը պետք է լինի նվազագույն ծախսումներով էժանագույն շատ արտադրանք տալը։ Դեռևս 1919 թվականին Վ. Ի. Լենինը ընդգծել է. սովետական տնտեսությունները ստեղծվել են, որպեսզի «...ընդհանուր աշխատանքով ավելի լավ արտադրվի, քան առաջ, ավելի էժան, քան առաջ և ավելի շատ, քան առաջ» (Երկեր, հ. 29, էջ 36)։

Այս ամենի հետ մեկտեղ, անհրաժեշտ է ընդգծել, որ Նոյեմբերյանի առաջավոր սովխոզները՝ Ջեյթուն, Լալվար, Հաղթանակ և այլն, վաղուց փոխհատուցել են պետության կատարած ծախսերը և վերջին տասնամյակում դարձել շահութաբեր։ Օրինակ, 1964—1966 թթ. Ջեյթուն սովխոզի զուտ օգուտները կազմել են 1629 հազար ռ., որից 1965 թ.՝ շուրջ 952 հազար ռ., Լալվարինը՝ 1039 հազար ռ., Հաղթանակինը՝ 760 հազար ռուբլի։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի վերջերս ընդունած որոշման մեջ նշված է, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու և ձեռնարկությունների աշխատանքի արդյունքների բարելավման նկատառմամբ սովխոզների ու մյուս պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով, նախատեսվում է սովխոզները և պետական մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունները աստիճանաբար փոխադրել լրիվ տնտեսական հաշվարկի։

Լրիվ տնտհաշվարկի փոխադրված տնտեսությունները պետք է փոխհատուցեն բոլոր արտադրական ծախսերը, ապահովեն հետագա ընդլայնված վերարտադրությունը, ստեղծեն տնտեսական խթանման և այլ ֆոնդեր, ինչպես նաև սեփական միջոցների հաշվին մարեն բանկի վարկերը։

Հնարավո՞ր է արդյոք Նոյեմբերյանի շահութաբեր սովխոզներից որևէ մեկը այժմ փոխադրել տնտեսական հաշվարկի։ Կարծում ենք կարելի է փոխադրել առայժմ Ջեյթունի սովխոզը։ Դրա հիմնական գրավականը տնտեսության բարձր շահութաբերությունն է։

Սովխոզները տնտեսական հաշվարկի փոխադրելը կուսակցական, գյուղատնտեսական օրգաններից, տնտեսությունների ղեկավարներից, մասնագետներից պահանջում է բազմակողմանի նախապատրաստական աշխատանք։

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԳՈՐԻՍԸ

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Անցել են ժամանակները, փոխվել են բարքերը. հիմնովին փոխվել, անճանաչելի է դարձել Գորիսը, Հայաստանի հեռավոր ու գեղեցիկ այդ անկյունը։

Գյուղատնտեսությունն այստեղ վարվում է առաջավոր եղանակներով և օգտագործվում են բարդ մեքենաներ։ Մեծ ջանքեր են թափվել ու թափվում գյուղատնտեսությունն ինտենսիվացնելու և ապրանքային դարձնելու համար։

Ծնունդ է առել ու զարգացել նաև արդյունաբերությունը։ Կար ժամանակ, երբ Գորիսի ամենախոշոր արդյունաբերական ձեռնարկությունը սայլաշինական արտելն էր, որը հազիվ էր բավարարում շրջանի նորաստեղծ կոլտնտեսությունների պահանջները։ Այժմ նրա հետքն էլ չի մնացել։ Գետնահարկերում տեղավորված երբեմնի խղճուկ արհեստանոցներին փոխարինել են մեծ ու փոքր արդյունաբերական ձեռնարկություններ, ուր տեղակայված են հայրենական մեքենաները։ Նրանց թողարկած արտադրանքը լայն ճանաչում է գտել հանրապետությունում և նրա սահմաններից դուրս։ Առավել ինտենսիվ են զարգանում թեթև արդյունաբերության, սարքաշինության, գյուղատնտեսական հումքի վերամշակման արտադրության ճյուղերը։ Հատկապես աչքի է ընկնում տրիկոտաժի ֆաբրիկան, որը 1966 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, հայրենիքին տվեց 26 տոկոսով ավելի արտադրանք։ Նրա կոլեկտիվը տարեցտարի ավելացնում է արտադրանքը, բարձրացնում որակը։ Առանց նոր սարքերի տեղակայման ու բանվորական ուժի ավելացման ձեռնարկության կոլեկտիվը ժամկետից 20 օր շուտ կատարեց հնգամյա առաջին տարվա պլանը և դրանից ավել արտադրեց 128 հազար կտոր տրիկոտաժեղեն, 4 տոկոսով բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը, 2,1 տոկոսով իջավ արտադրանքի ինքնարժեքը։ Ֆաբրիկան տարեկան ստացավ 134 հազար ռուբլի օգուտ, 95 հազարի դիմաց։

Լայնորեն ծավալվել է կոմունիստական աշխատանքի շարժումը։ Գործվածքային տեղամասի՝ Ամալյա Բարխուդարյանի ղեկավարած երիտասարդական բրիգադան պլանը կատարեց 150 տոկոսով և արժանացավ կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի բարձր կոչմանը։ Այստեղ գովեստով են խոսում ջուլհակուհիներ Գ. Ադոնցի, Ռ. Առաքելյանի, Ն. Գասպարյանի և ուրիշների մասին, որոնք գերակատարում են օրվա առաջադրանքները և տալիս բարձրորակ արտադրանք։

Հոկտեմբերյան հեղափոխության 50 ամյակի առթիվ ֆաբրիկայում ծա-



վալվել է սոցիալիստական մրցությունը։ Ֆաբրիկայի կոլեկտիվը պարտավորվել է տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 15-ին, իսկ մնացած երկու շաբաթում, աշխատելով միայն խնայված միջոցների հաշվին, պլանից դուրս արտադրել ավելի քան 150 հազար կտոր տրիկոտաժեղեն։ Այժմ ֆաբրիկայի արտադրանքն առաքվում է 300 հասցեներով՝ Մոսկվա, Կիև, Լենինգրադ, Օդեսա, Վլադիվոստոկ և այլ քաղաքներ։

1960 թվականին իր առաջին արտադրանքը տվեց Գորիսի փոքր էլեկտրաշարժիչների գործարանը։ Բնականաբար, այս երիտասարդ ձեռնարկության կոլեկտիվը սկզբնական շրջանում լուրջ դժվարությունների հանդիպեց։ Նրա անձնակազմը չուներ անհրաժեշտ փորձ ու գիտելիքներ. անբավարար էր արտադրամասերի տեխնիկական հագեցվածությունը։ էլեկտրաշարժիչների գրեթե բոլոր մասերն ու դետալները ուշացումով էին ստացվում. այդ ամենը խախտում էր գործարանի ռիթմիկ աշխատանքը։ Սակայն կարճ ժամանակամիջոցում հաղթահարվեցին դժվարությունները. բանվորներն ու տեխնիկական անձնակազմը փորձ ձեռք բերեցին, դարձան իրենց գործի իսկական վարպետները, կառուցվեցին ու սարքավորվեցին մի շարք նոր արտադրամասեր։ Այժմ էլեկտրաշարժիչների բոլոր դետալներն արտադրվում են տեղում. դա մեծ չափով նպաստում է ո՛չ միայն առաջադրանքների անթերի կատարմանը, այլև որակի բարելավմանն ու ինքնարժեքի իջեցմանը։ Եթե 1960—1965 թթ. գործարանի արտադրանքի ծավալը մեծացավ 2,5, ապա միայն հնգամյակի առաջին տարում, 1965 թվականի համեմատությամբ, 2 անգամ։ Այդ նույն տարում գործարանն իրացրեց արտադրանքի երկու նոր տեսակ և ձեռնամուխ եղավ դրանց մասսայական թողարկմանը։ Նոր էլեկտրաշարժիչների ծավալը զգալիորեն փոքր է նախկինում թողարկվողներից. սրանք օգտագործվում են առևտրական ու կուլտուր-կենցաղային սպասարկման օբյեկտներում և առաքվում Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Խարկով, Օդեսա, Ռոստով և այլ քաղաքներ։ Վերջերս գործարանը պատրաստեց տան առաստաղների «Զանգեզուր» մարկայի օդափոխիչների առաջին խումբը։ Դրա արտադրությունը յուրացվել է Երևանում գործող կոմպլեքսային էլեկտրասարքավորման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի մասնագետների համագործակցությամբ։

Փոքր էլեկտրաշարժիչների գործարանն այժմ թողարկում է 22 տեսակի արտադրանք։ Նոմենկլատուրայում հիմնական տեղը գրավում են 0,5—2 վատտ հզորության էլեկտրական փոքրիկ շարժիչները, որոնք ուղարկվում են 180 հասցեով։ Գործարանի առաջընթացի հետ աճել ու բարձրացել են մարդիկ, որոնք աչքի են ընկնում իրենց հայրենանվեր գործերով։ Գործիքաշինական արտադրամասի փականագործ Ա. Ղարիբյանը, մամլող արտադրամասի բանվորուհի Է. Պետրոսյանը, մեխանիկական արտադրամասի խառատ Ե. Դինունցը սոցիալիստական մրցության դրոշը բարձր պահած ձգտում են արտադրական լավագույն ցուցանիշներով դիմավորել Հոկտեմբերի պանծալի 50-ամյակը։

Նախկին սայլաշինական արտելին փոխարինել է ավտովերանորոգման գործարանը, որի կոլեկտիվը շնորհակալ գործ է կատարում տրանսպորտի անխափան ու բարձր արտադրողական աշխատանքն ապահովելու համար։ Այն սպասարկում է Գորիսի, Ղափանի, Սիսիանի, Ազիզբեկովի, Եղեգնաձորի, ինչպես նաև հարևան ադրբեջանական հանրապետության մի քանի շրջանների տնտեսությունների։ Այստեղ անընդհատ կատարելագործվում են աշխատատար պրոցեսները, ներդրվում առաջավոր փորձը, բարելավվում արտադրանքի

որակը։ Գործարանը տարեկան հիմնական նորոգման է ենթարկում 300 ավտո-
մեքենա, 500 շարժիչ։ Կատարվում են նաև այլ պատվերներ։

Գորիս քաղաքի Շորի ձոր կոչվող ծայրամասում մի քանի տարի առաջ
միայն վայրի թփեր ու մացառներ էին, քարակույտեր ու անհարթ տարածու-
թյուններ. այժմ այնտեղ կյանք է առել տեղական հարուստ հումքի բազայի
վրա կառուցված կրի գործարանը, որը Գորիսի, Ղափանի, Սիսիանի, ադրբե-
ջանական հանրապետության Լաչինի և Կուբաթլիի շրջանների շինարարական
կազմակերպություններին տարեկան տալիս է մինչև 5000 տոննա բարձրորակ
կիր։ Գործարանից քիչ հեռու փռված է երկաթբեթոնե կառուցվածքների հրա-
պարակը, որը շենքերի ծածկերի, միջնորմների համար արտադրում է պանել-
ներ և սալիկներ։ Անցյալ տարի հրապարակը միայն Գորիսի շինարարական
տեղամասին տվեց 3700 խորանարդ մետր երկաթբետոնե կառուցվածք, այս
տարի նրա արտադրական կարողությունը կբարձրանա երկու անգամ։

Մոտ երկու տասնամյակ առաջ Գորիսում շահագործման հանձնվեց գա-
րեջրի գործարանը։ Տարեցտարի ավելացել է նրա արտադրանքը, բարձրացել
որակը։ Ձեռնարկության մարդիկ պայքարում են հնգամյակի առաջադրանք-
ները կատարելու չորս տարում և հայրենիքին ավելի քան 100 հազար ռուբլու
արտապլանային արտադրանք տալու համար։ Գործարանի կոլեկտիվը նոր
հնգամյակի առաջին տարվա պլանը հաջողությամբ կատարեց նոյեմբերի
5-ին, թողարկելով մոտ 360 հազար ռուբլու գարեջուր և լիմոնադ։ Ոգևորված
ձեռք բերած հաջողություններով, կոլեկտիվը պայքարում է այս տարի պլան-
ները կատարել նոյեմբերի 7-ին և մեր երկրին տալ ավելի քան 150 հազար
ռուբլու արտապլանային արտադրանք։

1965 թվականին Գորիս քաղաքի արդյունաբերական ձեռնարկություննե-
րը համալրվեցին ծխախոտի ֆերմենտացիոն ֆաբրիկայով, որը մշակում է
Զանգեզուրի կոլտնտեսությունների ու սովխոզների ծխախոտի առատ բերքը։

Բոլորովին վերջերս քաղաքում կազմակերպվեց արտադրական կոմբի-
նատ, որն ունի մի շարք արտադրամասեր։ Այն արտադրում է անչրանցիկ
վերարկուներ, հագուստեղեն։ Պլանավորված է առաջիկայում արտադրել նաև
շշերի պատյաններ, գլխարկներ, խաղալիքներ։

Աշխատավորության հարաճուն պահանջմունքները բավարարելու համար
մեծ ու պատվավոր գործ են կատարում Հայգործի Գորիսի ֆիլիալը, կենցաղ-
սպասարկման կոմբինատը, փայտամշակման գործարանը, գազի գրասեն-
յակը և արտադրական այլ ձեռնարկություններ։ Հետզհետե մեծանում է ար-
դյունաբերության տեսակարար կշիռը շրջանի տնտեսության մեջ։ Այսպես,
եթե 1960 թվականին այն կազմում էր 32 տոկոս, 1966-ին հասավ 49-ի։

***

Մոտակա 2—3 տարում զգալիորեն կընդլայնվեն Գորիսի ձեռնարկու-
թյունները, կբարձրանան նրանց արտադրական կարողությունները։ Այս տա-
րի կավարտվի և շահագործման կհանձնվի տրիկոտաժի ֆաբրիկայի նոր
շենքը, որը հնարավորություն կընձեռի 3 միլիոնի փոխարեն, արտադրել ավե-
լի քան 6 միլիոն ռուբլու տրիկոտաժեղեն։ Այստեղ կաշխատեն 1000-ից ավե-
լի բանվոր։

Արտադրամասերի ընդլայնման, նոր մեքենաների և սարքավորումների
ներդրման շնորհիվ շուրջ 3 անգամ կավելանա Հայգործի Գորիսի ֆիլիալի



արտադրանքը, կյուրացվեն արտադրանքի նոր տեսակներ։ Կընդարձակվեն նաև
մյուս արտադրական մեծ ու փոքր ձեռնարկությունները։

Սրանք բոլորը չեն. միայն եղած ձեռնարկությունների վերափոխումով,
ընդլայնումով չեն սահմանափակվում Գորիսի արդյունաբերության զարգաց-
ման հեռանկարները։ Արդեն սկսված են փոքր էլեկտրաշարժիչների գործարա-
նի նոր շենքի կառուցման աշխատանքները, որի լրիվ գործարկմամբ Գորիսի
արդյունաբերական արտադրանքի ծավալն ավելի կմեծանա, այնտեղ կաշխա-
տեն 1115 հոգի։ Նրա տարեկան արտադրանքը կհասնի 4—5 միլիոն ռուբլու,
այժմյան մեկ միլիոնի փոխարեն։ Նախատեսվում է կառուցել նաև ավտոնո-
րոգման ու գարեջրի տիպային նոր գործարաններ։

Շինուհայրի նորաստեղծ բանվորական ավանում շուտով կսկսվի արհես-
տական նրբանի նոր գործարանի շինարարությունը, որը տարեկան կտա 5
միլիոն զույգ կոշիկի ռետինե նրբան։

Սկսված է Խոտ-Կոռնիձոր բարդ ջրանցքի շինարարությունը, որը կոռոգի
5520 հեկտար արգավանդ հողեր։ Ջրովի այդ տարածության վրա կտնկվեն
1330 հեկտար խաղողի, 1830 հեկտար պտղատու այգիներ, իսկ 330 հեկտարի
վրա կմշակվի բանջարեղեն։ Դրանք մշակելու համար, բնականաբար, կզգաց-
վի գինիների արտադրության և պահածոների գործարաններ կառուցելու ան-
հրաժեշտություն։

Լեռնահետախուզական լայն աշխատանքներ են տարվում շրջանի Սևա-
րանց, Բարձրավան, Հալիձոր և մյուս գյուղերի շրջակայքում։ Սևարանց գյու-
ղի շրջակայքում հայտաբերված են մեծ քանակությամբ տիտանային երկաթի
պաշարներ։ Գորիսի շրջանում կան կրի, նեֆելինային սիենիտների անսպառ
պաշարներ, ինչպես նաև ոսկի և արժեքավոր այլ հանածոներ։

Այս ամենը (հարուստ օգտակար հանածոները, էլեկտրաէներգիան, աշխա-
տավոր ուժի առկայությունը և աշխարհագրական հարմար դիրքը) Գորիսը
ծանր արդյունաբերության կենտրոն դարձնելու մեծ հեռանկարներ է բացում։
Դրա համար մոտ ապագայում կկառուցվի մեխանիկական հսկա գործարան
իր բազմաթիվ արտադրամասերով ու նորագույն սարքավորումներով։ Սևա-
րանց, Հալիձոր, Բարձրավան գյուղերի շրջակայքում գտնվող երկաթի, ոսկու
և այլ արժեքավոր հանքաքարերը կմշակվեն տեղում. կզարգանա քիմիական
արդյունաբերությունը։ Իսկ Տաթևի էլեկտրաէներգիան քանի՜-քանի նոր, մեծ
ու փոքր արդյունաբերական ձեռնարկություններ կծնի ու կյանքի կկոչի Զան-
գեզուրի լեռների հարստությունը։ Եվ բնության թաքնված գանձերը ի սպաս
կդրվեն մարդու բարօրությանը։

րովի շարադրելու համար գնահատական չի նախատեսված: Եթե շարադրությունը գրված է «սահուն», «անսխալ», դասագրքից առնված բառերով ու արտահայտություններով, ավելի բարձր է գնահատվում, քան ինքնուրույն, փոքր-ինչ ավելի տառասխալներով շարադրությունը: Հիշյալ սկզբունքը գործում է թե՛ դպրոցում, թե՛ բուհերի ընդունելության քննությունների ժամանակ: Դե, արի ու մեղադրիր ուսուցչին:

Գրականության ուսուցչի կարևորագույն խնդիրներից մեկը, մեր կարծիքով, հենց աշակերտի՝ գեղարվեստն ինքնուրույն ըմբռնելու, վերլուծելու և յուրովի արտահայտելու կարողության զարգացումն է: Դիցուք, ուսուցիչը փորձում է ավանդել այս մեթոդով. հնարավոր է, որ նա երկար ժամանակ չհասնի ուսման ցանկալի առաջադիմության, իսկ վերադասին ամենից շատ հետաքրքրում է առաջադիմության տոկոսը. հետևաբար ուսուցիչը ակամա թողնում է նյութի մատուցման եղանակի ստեղծագործական որոնումները և հարմարվում օրինականացված ձևական պահանջներին: Ուստի անհրաժեշտ է վերացնել ուսուցչին կաշկանդող կապանքները:

Ենթադրենք, բարեփոխվեցին ծրագիրը, դասագրքերը, գիտելիքների գնահատման նորմերը, ուսուցիչն էլ եղավ իր տեղում: Դրանով հարցը կսպառվի՞: Չեմ կարծում: Ահա թե ինչու: Տեղի-անտեղի հոլովելով ուսուցչի անունը, մոռանում ենք աշակերտին: Ինձ ծանոթ հայ գրականության ուսուցիչները խոստովանում են, որ աշակերտների զգալի մասը, հատկապես բարձր դասարաններում, սկսում է ուսման մեջ հետադիմել, դպրոց հաճախել մի տեսակ տհաճությամբ, դասի նստել որպես ձանձրալի պարտականություն:

Քանի մոտենում է դպրոցն ավարտելու ժամանակը, օրվա դասերից առավել աշակերտին մտահոգում է ճետոն: Հենց այս անորոշ ճետոն է, որ հաճախ լիցքաթափ է անում նրան... Հարցրեք նրան, թե որտե՞ղ է աշխատելու կամ սովորելու: Նա կպատասխանի՝ «տեսնենք, որտեղ հաջողվի...»: Նշանակում է, երեկվա դպրոցականի համար, կյանքի շեմին վճռականը հանգամանքներն ու պատահականություններն են և ոչ իր հակումներն ու գիտելիքները: Սա շատ լուրջ պատճառ է, որի մասին, ցավոք, սակավ է խոսվում: Թվում է, որ դպրոցի շրջանավարտներին պետք է ազատել «բարի քեռիներից» և նրանց ուղեկից կարգել պետական մի այնպիսի օրգան, որը դպրոցի օգնությամբ և վճռական մասնակցությամբ, հաշվի առնելով նորավարտներից յուրաքանչյուրի գիտելիքներն ու հակումները, կատարի տեղաբաշխում արտադրության մեջ և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության ցանցում: Այս իմաստով, ժամանակն է վերանայելու բուհերի ընդունելության այժմյան կարգը և ուսուցման դրվածքը, որոնք ունեն շատ խոցելի կողմեր: Եվ այսպես. քանի խորանում ես, զգում ես, որ հայ գրականության դասավանդման հարցը ինչ-որ ինքնամփոփ բան չէ, այլ բազմաթիվ թելերով կապված է դպրոցական և բուհական կյանքի, գլխավորապես ուսուցման դրվածքի մի շարք հասունացած պրոբլեմների հետ, որոնք պահանջում են համարձակ լուծում, կոմպլեքս միջոցառումներ:

Երկու խոսք բանավիճող ընկերների առաջարկությունների մասին: Ընկ. Աթայանը հայ գրականության դասավանդման անբարվոք վիճակը բացատրելիս վկայակոչում է նաև դասագրքերի ցածրորակությունը և եզրակացնում, թե առհասարակ դասագրքերը պետք չեն, բավական է ունենալ ծրագիր, քրեստոմատիա: Այսինքն՝ աչքացավը բուժելու փոխարեն լավ է ազատվենք աչքից:

Ընկ. Հարությունյանը, իրավամբ նշելով հայ գրականության կայուն, բարձրորակ դասագրքերի անհրաժեշտությունը, առաջարկում է իրենց չարդարացնող ուսուցիչների մի մասին որակավորել վերապատրաստման կուրսերում, սովորեցնել «դասավանդման օգտակար և շահեկան մեթոդները»: Եվ դա առաջարկվում է այն ուսուցիչների համար, «որոնք ավարտելով ինստիտուտը, դպրոց են եկել մասնագիտական թույլ պատրաստությամբ, տեղերում էլ ինքնակրթությամբ չեն լրացրել իրենց ուսման պակասը, չեն կատարելագործել ուսուցման մեթոդները...»: Մեր կարծիքով, նման ուսուցիչներից պարզապես պետք է ազատվել: Մանկավարժի կարողություն և սովորելու ցանկություն ունենալու դեպքում նրանք դասավանդման օգտակար ու շահեկան մեթոդներ ձեռք կբերեն հենց պրակտիկ մանկավարժական աշխատանքում, ուսուցչական կոլեկտիվում: Մակարենկոյին ո՛չ դասագրքերը և ո՛չ էլ դասախոսությունները մանկավարժ դարձրին: Ով կոչված է մանկավարժ լինելու, սիրում է իր գործը, օժտված է նուրբ դիտողականությամբ, երեխայի հուզաշխարհը թափանցելու և ինքնավերլուծման հմտությամբ, նա կմշակի դասավանդման իր արդյունավետ մեթոդը, որը կարող է նպատակահարմար չլինել մի այլ շրջանի կամ դպրոցի ուսուցչի համար: Կարճ ասած՝ դասավանդման կանոնարկված մեթոդիկան որքան էլ օրինակելի համարվի, պատճենելու դեպքում դառնում է երբեմն վնասակար:

Ինչպես արտիստը, այնպես էլ ուսուցիչը պետք է ծնված լինի այդպիսին: Նա պետք է սիրի երեխաներին, իր ավանդած առարկան, կարողանա արտիստի պես ոգևորվել, իր ոգևորությամբ համակել ողջ դասարանը: Եվ միայն այդ ժամանակ երեխաներն էլ կսիրեն ուսուցչին ու գրականությունը, նրանք չեն էլ ցանկանա, որ ավարտվի դասը:

Ս. ՅԱՎՐՅԱՆ

---

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՄԱՐՔՍԻԶՄԻ ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐԻ ԱՌԱՋԻՆ ՀԱՄԱՏԵՂ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ

*(Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի* Սուրբ ընտանիք կամ Քննադատական քննադատության քննադատություն *գրքի հայերեն հրատարակության առթիվ)*

XIX դարի 40-ական թվականները մարքսիստական աշխարհայացքի ծագման ու ձևավորման տարիներն էին: Փայլուն ձիրքով օժտված և հարուստ գիտելիքների տեր, արդեն գաղափարական պայքարի հորձանուտը մտած երիտասարդ Մարքսն ու Էնգելսն այդ տասնամյակի առաջին տարիներին իրարից անկախ ու տարբեր ուղիներով հանգել էին միևնույն գաղափարներին, որոնք դարձան նրանց այնքան խոր, բազմակողմանի մշակած աշխարհայացքի հիմքը:

Դեռևս 1842 թվականին, երբ Մարքսը նախ աշխատակցում, ապա խմբագրում էր Հռենոսյան լրագիրը, նրա որոնող միտքը բախվել է մի շարք հարցերի, որոնց պատասխանը նա չէր կարող քաղել ոչ մի փիլիսոփայական, տնտեսագիտական կամ սոցիոլոգիական սիստեմից: Մարքսի սեփական հետազոտությունները, ամենից առաջ Հեգելի՝ իրավունքի փիլիսոփայության վերանայման գծով, նրան բերին այն եզրակացության, որ իրավական հարաբերությունները, ինչպես և պետության ձևերը, չեն կարող հասկացվել ոչ իրենք իրենցից, ոչ էլ, այսպես կոչված, մարդկային ոգու ընդհանուր զարգացումից, որ ընդհակառակն, նրանց արմատները գտնվում են կյանքի նյութական հարաբերություններում, որոնց ամբողջությունը Հեգելը, XVIII դարի անգլիացիների և ֆրանսիացիների օրինակով, անվանում էր «քաղաքացիական հասարակություն», և որ քաղաքացիական հասարակության անատոմիան պետք է որոնել քաղաքատնտեսության մեջ (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. I, էջ 427):

Մարքսի անցումը իդեալիզմից մատերիալիզմին և հեղափոխական դեմոկրատիզմից սոցիալիզմին, որն սկսվել էր Հռենոսյան լրագրին աշխատակցելիս, վերջնականապես կատարվում 1844 թվականին. այդ տարեթվին նրա հրապարակած Հրեական հարցի շուրջը և Իրավունքի Հեգելի փիլիսոփայության քննադատության ներածություն հոդվածներում ու, հատկապես, 1844 թվականի տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում, որոնք առաջին անգամ հրատարակվեցին գրվելուց ավելի քան 80 տարի անց, արդեն ուրվագծված էին գիտական կոմունիստական աշխարհայացքի մի շարք արմատական դրույթներ:

Նույն այդ տարիներին Էնգելսը, ապրելով Անգլիայում, մոտիկից ծանոթանում է այդ ամենազարգացած կապիտալիստական երկրի կյանքին, խորապես ուսումնասիրում բանվոր դասակարգի դրությունը, կապ հաստատում անգլիական բանվորական շարժման ղեկավարների հետ: Էնգելսի ինքնուրույն տեսական որոնումները և պրակտիկ կյանքի ուսումնասիրությունները նրան բերում են մատերիալիստական և սոցիալիստական համոզմունքների, որոնք արդեն արտահայտված են նրա այն ժամանակվա հոդվածներում, հատկապես Քաղաքատնտեսության քննադատության ուրվագծում. այդ ուսումնասիրությունների արդյունքը եղավ նրա հայտնի Բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում գիրքը, որ հրատարակվեց 1845 թվականին: Եվ երբ Մարքսն ու Էնգելսը, 1844 թվականի սեպտեմբերին հանդիպեցին Փարիզում և համոզվեցին, որ իրենց հայացքները համընկնում են, նրանց առջև ծառացավ դրանք համատեղ մշակելու, զարգացնելու և իրենց հակառակորդների հայացքներին հակադրելու խնդիրը: Այդ ժամանակվանից երկու հանճարեղ մարդկանց միջև սկսվեցին հավասարը չունեցող բարեկամությունը, համատեղ ստեղծագործությունն ու պայքարը: Նրանց աշխատանքի առաջին պտուղը Սուրբ ընտանիք կամ Քննադատական քննադատության քննադատություն է, որի մեջ Վ. Ի. Լենինի բնութագրմամբ, առկա են հեղափոխական մատերիալիստական սոցիալիզմի հիմքերը (տե՛ս Երկեր, հ. 2, էջ 11):

չեն խախտում վերը տրված ընդհանուր դրական գնահատականը, մանավանդ, եթե հաշվի առնենք, որ բանավեճային այս աշխատությունը բավական դժվարթարգմանելի է։

Ի վերջո, չի կարելի չողջունել «Հայաստան» հրատարակչության գնահատելի գործը՝ մարքսիզմի հիմնադիրների մեծահարուստ ժառանգությունից ևս մի կարևոր աշխատության հայերեն հրատարակությունը։

Ա. ԹԵԼՈՒՆՑ

---

## ՊԱՆԾԱԼԻ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՐԺԱՆԱՎԱՅԵԼ ԳԻՐՔ*

Լույս է տեսել Սովետական Միություն 22-հատորանոց գիտահանրամատչելի աշխարհագրական նկարագրության առաջին հատորը՝ Հայաստանը։ Շքեղ ձևավորված, մատչելի լեզվով, բարձր կուլտուրայով գրված այդ գիրքը հարուստ է ցուցադրական նյութերով՝ քարտեզներով, դիագրամներով ու նկարներով (մի մասը գունավոր), որոնք վառ պատկերացում են տալիս Հայաստանի ծանր անցյալի ու բարգավաճ, ծաղկող ներկայի մասին։ Հեղինակները հնարավորության սահմաններում տվել են նորը, կարևորը, բնորոշը, պարզաբանել հանրապետության տերիտորիայի աշխարհագրության հանգուցային հարցերը, վերլուծել արտադրաուժերի զարգացման ու տեղաբաշխման բնատնտեսական հիմքերը, նրա բնաշխարհի, բնակչության, ամբողջ ժողովրդական տնտեսության բնական պայմանները, բացահայտել Սովետական Հայաստանի տնտեսության զարգացման նյութական հիմքերն ու նվաճումները։




Ռուս ընթերցողները, որոնց մի մասը աղոտ կամ ոչ մի պատկերացում չունի Հայաստանի բնության բազմազանության, ընդերքի հարստության, հայ ժողովրդի անցյալի մասին, կարդալով գիտական բարեխղճությամբ գրված և հայրենասիրությամբ տոգորված այս աշխատությունն, անհրաժեշտ տեղեկություններ կքաղի մեր ժողովրդի ձևավորման, նրա լեզվի զարգացման, հայ պետականության հիմնադրման մասին, կիմանա, որ հայերն աշխարհի հնագույն ժողովուրդներից են՝ հարուստ հին կուլտուրայով։

Աշխարհի հնագույն քարտեզներից մեկում՝ Բաբելական սստղաձև քարտեզում (կազմվել է մ. թ. ա. V դարում), պատկերված 6 երկրներից մեկը Հայաստանն է։ Ըստ օտարերկրյա հետազոտությունների, հայերի նախնիներն աշխարհի ցեղերի մեջ առաջինն են եղել, որ զբաղվել են լեռնագործությամբ, հայտնաբերել երկաթը՝ գնելով երկաթի դարաշրջանի սկիզբը (էջ 23)։

Աշխատության Բնությունը բաժնում հանգամանորեն խոսվում է Հայաստանի ռելիեֆի, ջրագրության, հողա-բուսական ծածկույթի, կենդանական աշխարհի ու կլիմայի առանձնահատկությունների մասին։ Լինելով Անդրկովկասի ամենալեռնոտ և կտրտված շրջանը, Հայաստանը աչքի է ընկնում լանդշաֆտի ապշեցուցիչ փոփոխություններով, որի յուրաքանչյուր լեռնաշղթայի «թիկունքում» մի նոր աշխարհ է բացվում։ Նախկին Թեթիս օվկիանոսի տեղում առաջացած երկրի՝ Հայաստանի ընդերքը հարուստ է օգտակար հանածոներով և լճային ու գետային նստվածքներով։ Հայաստանը իրավամբ համարվում է Երկրաբանական թանգարան։ Քարտեզում ցույց են տրված 3 տասնյակից ավելի հանքատեսակներ, որոնք հիմնականում հայտնաբերվել են սովետական տարիներում։ Հանածո հարստություններից շատերը՝ պղինձը, մոլիբդենը, ոսկին, շինանյութերը, ունեն միութենական նշանակություն։

Հանրապետությունը հարուստ է ստորերկրյա ջրերով, հանքային աղբյուրներով, որոնց հիման վրա ստեղծված են միութենական հռչակ վայելող Ջերմուկ, Արզնի, Հանքավան, Սևան առողջարանները։

Բնակչությունը և կուլտուրան գլխում պարզաբանված են կյանքում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական խոր վերափոխումները՝ բնակչության դեմոգրաֆիան, սոցիալական կազմը, տեղաբաշխումը, տարաբնակեցումը, քաղաքային և գյուղական բնակչության կազմի փոփոխությունները, հին քաղաքների զարգացումը, նորերի առաջացումը, գյուղի արմատական վերակառուցումը։

Հայաստանը Սովետական Միության գիտության կարևոր կենտրոններից մեկն է. 100-ից ավելի գիտահետազոտական հիմնարկներն այժմ մշակում են ժողովրդա-տնտեսական կարևոր նշանակություն ունեցող պրոբլեմներ, միութենական և համաշխարհային մասշտաբի խնդիրներ։ Հայաստանը միաժամանակ կադրերի պատրաստման դարբնոց է. 12 բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 30 հազար ուսանող։ Հանրապետությունն աչքի է ընկնում և տեխնիկական ինտելիգենցիան։

Տնտեսությունը բաժնում հեղինակները հանգամանորեն լուսաբանում են հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման, արդյունաբերության և գյուղատնտեսության մասնագիտացման, տեղաբաշխման հարցերը։ Արդյունաբերության զարգացման մակարդակով Հայաստանը համարվում է Սովետական Միության առաջավոր հանրապետություններից մեկը և վաղուց է անցել իր հարևան կապիտալիստական երկրներից (Թուրքիայից, Իրանից)։ Ընդլայնվել են նրա տնտեսական կապերը եղբայրական հանրապետությունների և արտասահմանյան երկրների հետ։ ՍՍՀՄ տերիտորիայի 0,13 տոկոսը կազմող և բնակչության մոտ 1 տոկոս ունեցող հանրապետությունն այսօր առաքում է 150 տեսակի արդյունաբերական ապրանքներ, որոնց թվում և ունիկալ տեսակներ։ Այժմ Հայաստանը յուրաքանչյուր երկու օրում թողարկում է ավելի շատ արտադրանք, քան ամբողջ 1913 թվականին։ Ժողովրդական տնտեսության մեջ արդյունաբերության տեսակարար կշիռը հասնում է 70 տոկոսի, 1913 թվականի 14-ի դիմաց. իսկ գյուղատնտեսության բաժինը նվազել է, չնայած բացարձակ թվերով նրա համախառն արտադրանքը 4 անգամ գերազանցել է նախահեղափոխական մակարդակը։

Սևան—Հրազդանի էներգետիկ-ոռոգիչ կոմպլեքսի կառուցումը և մյուս գետերի վրա գործարկված հիդրոէլեկտրակայանները Հայաստանին հնարավորություն ընձեռեցին իրականացնելու հանրապետության լրիվ էլեկտրիֆիկացումը։ Հեղինակները հանգամանորեն անդրադառնում են հանրապետության էներգետիկայի վիճակին ու պրոբլեմներին։

Այնուհետև պարզաբանվում են արտադրության միջոցների (Ա խմբի) և սպառման առարկաների (Բ խմբի) արտադրության կազմում տեղի ունեցած փոփոխությունները, գունավոր մետալուրգիայի, թեթև և սննդի արդյունաբերության, մեքենաշինության, քիմիական, շինարարական արդյունաբերության զարգացման խնդիրները, վեր հանում դրանց նշանակությունը հանրապետության ժողովրդական տնտեսության և միութենական համապատասխան ճյուղերում։

Գրքում համառոտակի խոսվում է Հայաստանի գյուղատնտեսության մասին, նշվում նրա առանձնահատկությունները։ Բարդ ռելիեֆի հետևանքով սահմանափակ են օգտագործվող հողերը, վարելահողերը։ Գյուղատնտեսության համար եղած ռեզերվները շատ սահմանափակ են, որի պատճառով և հիմնական ուշադրությունը պետք է նվիրվի հողագործության ընդհանուր կուլտուրայի բարձրացմանը, բերքատվության և անասնապահության մթերատվության ավելացմանը, այսինքն՝ գյուղատնտեսությունը պետք է զարգանա ոչ թե ըստ տարածության, այլ ըստ խորության, բարձրացվեն որակական ցուցանիշները։ Հանրապետության գյուղատնտեսության մասին հիմնավոր գաղափար են տալիս հողահանդակների, ոռոգման, խաղողագործության, պտղաբուծության, տեխնիկական կուլտուրաների, անասնաբուծության՝ գիտական բարեխղճությամբ կազմված քարտեզները։ Հատկապես ընդգծվում է այգեգործության դերը, որի հումքի բազայի վրա մեծ չափով զարգացել է սննդի արդյունաբերությունը։

Գրքի մոտ կեսը նվիրված է ՀՍՍՀ բնապատմական 5 շրջանների՝ Արարատի, Շիրակի, Գուգարքի, Սևանի ավազանի և Սյունիքի բնական առանձնահատկությունների, տնտեսության ուղղությունների, հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ նրանց տեսակարար կշռի, տնտեսա-աշխարհագրական դիրքի բնութագրմանը։ Բնական և տնտեսական առանձնահատկություններով Անդրկովկասում ուրույն տեղ գրավող Արարատը, որի տերիտորիան ՀՍՍՀ քառորդ մասից էլ պակաս է, աչքի է ընկնում բնական պայմանների բազմազանությամբ, ընդերքի հարստություններով, լանդշաֆտի ցայտուն տարբերություններով՝ սկսած կիսաանապատային հարթություններից, վերջացրած հավերժական ձյունապատ գագաթներով։

Հաջող են նկարագրված մոտ երեքհազարամյա պատմություն ունեցող Երևանը, ընդարձակ անտառներով շրջապատված գեղատեսիլ Գուգարքը, տափաստաններով հարուստ Շիրակը, որտեղ գտնվում է բնակչության թվով երկրորդ մեծ քաղաքը՝ Լենինականը, Սևանի ավազանը և ընդերքով հարուստ հանքաբեր Սյունիքը...

Հայաստան գրքում պատկերված է այն ամենը, ինչ ձեռք է բերել հայ ժողովուրդը իր պատ-

---

* Советский Союз, Армения. Асланян А. А., Багдасарян А. Б., Валесян Л. А, Дульян С. М., ответ. ред. тома Багдасарян А. Б., Москва, «Мысль», 1967 г.

*մության ընթացքում, ինչ ստեղծել է վերջին կես դարում սոցիալիստական շինարարության տարիներին, նշված են մերձավոր ապագայի հեռանկարները, ժողովրդական տնտեսության զարգացման պրոբլեմները և այլն։*

*Այս շնորհակալ աշխատությունը կարևոր ներդրում է սովետական աշխարհագրական գրականության մեջ։ Հեղինակներին հաջողվել է գտնել նյութի շարադրման առավել դյուրին և ընդունելի ձև, որ հնարավորություն է ընձեռել առավել ամբողջական, միաժամանակ և սեղմ նկարագրելու հանրապետության վերընթացը։*

*Պարզ ու համոզիչ, միաժամանակ և բարձր մակարդակով գրված այս աշխատությունը մատչելի և օգտակար է բոլորին՝ անկախ մասնագիտությունից. այն սիրով կկարդա մեր երիտասարդությունը, կծանոթանա մեր հանրապետության վիթխարի նվաճումներին, որը նըրան կմղի նոր սխրանքների։*

*Աշխատության մեջ կան նաև մասնակի թերություններ։* Ընդհանուր տեսություն և Շրջաններ *բաժիններում քննարկվող հարցերը երբեմն կրկնվում են. այդ նկատելի է հատկապես պատմության և, մասամբ, գյուղատնտեսության հարցերը լուսաբանելիս։ Ավելի մանրամասն բացահայտման կարիք ունեն գյուղում կատարված վերափոխումները, դրանց պատճառների հիմնավորումը, հանրապետության տերիտորիայի վրա բնակչության անհավասար տեղաբաշխումը և այլն։ Ցանկալի կլիներ ընդգծել Արարատյան դաշտի և լեռնային շրջանների, մանավորապես Մեղրու, Ղափանի և մյուս շրջանների գյուղական բնակչության կենցաղի և աշխատանքի տարբերությունները։*

*Ցանկանք, որ Հայաստանը նույնքան շքեղ ու որակով մատուցվի նաև հայ ընթերցողին, որը լավագույն նվերը կլինի պանծալի 50-ամյակի տարեդարձին։*

Խ. ԱՎԵՏԻՍՅԱՆ
Աշխարհագրական գիտությունների թեկնածու

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու ֆարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Խմբագրության հասցեն՝ Երևան—16

Հեռախոսներ. գլխավոր խմբագիր՝ 7—16—90, պատասխանատու ֆարտուղար՝ 7—37—8C, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 26/VII 1967 թ.։

ՎՖ 04159 Պատվեր 1477 Տիրաժ 9875 Գինը 25 կոպ.։

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։*





## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավել, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10 էջ,* նամակներն ու թղթակցությունները՝ 4—6 էջ, գրախոսականները և մամուլի *տեսությունները՝ 6—8 էջ:*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը,* հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը:

*Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին:*

*Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՊՈՂՊԱՏԵ ՄԱՆՐԱԹԵԼ

*Շվեդիայում սկսել են պողպատե տեքստիլ մանրաթելի թողարկումը, որը մշակվում է սովորական տեքստիլ մեքենաների վրա։ Այդպիսի մանրաթելը հատկապես հարմար է անջրաթափանց գուլպաների արտադրության համար։*

### ԷԼԵԿՏՐԱՔԱՐՇ ԱՌԱՆՑ ՄԵՔԵՆԱՎԱՐԻ

*Բելգիական «Կոկերիլ-Օուգրե» պողպատաձուլական գործարանում փորձարկվել է ռադիոյով կառավարվող մանևրային էլեկտրաքարշ, որի հզորությունը 300 ձիաուժ է։ Կառավարումը, մանևրային աշխատանքները, ձայնային ազդանշաններ տալը, վագոնների և կառամատույցների հավաքովի սարքերը գործողության մեջ դնելը իրագործվում է մի քանի կիլոմետր հեռավորության վրա դրված թեթևաքաշ ռադիոհաղորդիչի միջոցով։*

### ԳՐՊԱՆՈՒՄ ՄԻ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀ

*Անգլիական նոր հեռուստացույցը տեղավորվում է գրպանում։ Չէ՞ որ նա քիչ է մեծ լուցկու տուփից. նրա չափսերն են 10.7.5 սմ. Չնայած իր փոքրությանը, այդ թզուկը կարող է ընդունել 13 ծրագիր։*

### ՍՊԻՏԱԿԵՂԵՆ՝ ԱԼՅՈՒՄԻՆԻՑ

*ԱՄՆ-ում վերջերս առևտրի ցանցում երևացել է ալյումինի բարակ ֆոլգայից պատրաստված սպիտակեղեն, որն ունի լամինատի բարակ շերտից աստառ։*

*Ալյումինի ծածկը ունի բազում մանր ծակոտիներ, որոնք օդ են բաց թողնում։*

### ՖՈՏՈԳԱՆՁԱՊԱՀ

*Շվեդիայում պատրաստել են նոր ավտոլցնող։ Բավական է նրա մեջ փող նետել և բենզինը կլցվի, բայց ոչ միանգամից։ Ավտոմատի մեջ դրված ֆոտոէլեմենտը, սկզբում մանրակրկիտ ուսումնասիրում է թղթադրամը և եթե ամեն ինչ կարգին է, հրաման է տալիս հիշող սարքին, իսկ նա միացնում է պոմպը։*

### ԻՆՔՆԱՀՈՍ ԳՐԻՉ-ԼԱՊՏԵՐԻԿ

*Ճապոնիայում թողարկվել է ինքնահոս գրիչների մի պարտիա՝ մարտկոցով և լապտերիկով։ Նրանով կարելի է գրել խավարի մեջ։ Նոր գրիչները հարմար են, նրանք հաջողությամբ կարող են ծառայել բոլոր նրանց, ում վիճակվում է մթնում աշխատել։*

### ՁԿՆԵՐԸ ԵՎ ԱԴԱՄԱՆԴՆԵՐԸ

*Գրենլանդիայի ջրերում լողացող շնաձկները իրենց ազգակիցներից տարբերվում են աչքերի փայլով։ Այդ փայլը գիտնականների կարծիքով հրապուրում է զանազան ձկների և նրանց դարձնում գիշատիչների որսը։ Ճապոնական ձկնորսները ցանցերի մեջ կախեցին լապտերներ և լյումինեսցենտային գույնով շրջանակներ։ Սկզբում ձկները չէին գայթակղվում։ Այդ ժամանակ լապտերները և շրջանակները փոխարինվեցին արհեստական ադամանդներով։ Դրանք շնաձկների աչքերի նման էին լույս տալիս, և ցանցերը արագ լցվում էին ձկնով։*

### ԱՎՏՈՄԱՏ ԳՐԱԴԱՐԱՆ

*Հոլանդիայում Դելֆտի համալսարանում ստեղծվել է աշխարհում առաջին ավտոմատ գրադարանը։ Բավական է վեց հեռախոսներից որևէ մեկի վրա հավաքել համապատասխան գրքի համարը, որպեսզի այն կես րոպե անց լինի ընթերցողի տրամադրության տակ։ Հենց որ հավաքվում է համարը, գրապահոցի լուսային ազդանշանը գրադարանի աշխատակցուհուն ցույց է տալիս անհրաժեշտ հատորի տեղը։ Եթե պահանջվող գիրքը ձեռքի վրա չէ, ապա այն սարքի միջոցով իջնում է ընթերցողի սեղանին, իսկ եթե գիրքը չկա, ազդանշանը հաղորդվում է կատալոգների դահլիճ։ Դրա շնորհիվ գրքի համար սպասում են 16 վայրկյան, նախկին 40 րոպեի փոխարեն։*